

ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

4·1980

ՄԵՐ ԲՈԼՈՐ ՀԱՂԹԱՆԱԿՆԵՐԻ ԳԼԽԱՎՈՐ ԱԿՈՒՆՔԸ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԵՎ ԺՈՂՈՎՐԴԻ ԱՆԽԱԽՏ ՄԻԱՍՆՈՒԹՅՈՒՆՆ Է, ԼԵՆԻՆԻ ԽՈՍՔԵՐՈՎ ԱՍԱԾ, ԿՈՄՈՒՆԻՍՏՆԵՐԻ՝ ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԻ ԱՄԵՆԱԼԱՅՆ ԶԱՆԳՎԱԾԻ ՀԵՏ ՄԵՐՁԵՆԱԼՈՒ, ՈՐՈՇԱԿԻ ՉԱՓՈՎ ՁՈՒԼՎԵԼՈՒ, ՆՐԱՆՑ ԵՌԱՆԴԸ, ՀԵՐՈՍՈՒԹՅՈՒՆՆ ՈՒ ԽԱՆԴԱՎԱՌՈՒԹՅՈՒՆԸ ԽՐԱԽՈՒՍԵԼՈՒ ԿԱՐՈՂՈՒԹՅՈՒՆԸ՝ ՀԵՂԱՓՈԽԱԿԱՆՈՐԵՆ ԼԱՐՎԱԾ ԶԱՆՔԵՐԸ ԿԵՆՏՐՈՆԱՑՆԵԼՈՎ ՀԵՐԹԱԿԱՆ ԿԱՐԵՎՈՐԱԳՈՒՅՆ ԽՆԴԻՐՆԵՐԻ ՎՐԱ:


# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

**4**

ԱՊՐԻԼ, 1980

ՀՐԱՏԱՐԱԿՎՈՒՄ Է 1922 Թ.

ИЗДАЕТСЯ С 1922 Г.

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

**«ЛЕНИНЯН УГИОВ»** («По ленинскому пути») — **теоретический и политический журнал ЦК КП Армении**


## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

### ԼԵՆԻՆԻԶՄԸ ԱՇԽԱՐՀԻ ՍՈՑԻԱԼԱԿԱՆ ՆՈՐԱՑՄԱՆ ԽՈՐՀՐԴԱՆԻՇՆ Է



### ՀԱՎԵՐԺՈՂ ԼԵՆԻՆԸ ՉԱՐԵՆՑԻ ՊՈԵԶԻԱՅՈՒՄ



### ԱՊՐԵԼ, ԱՇԽԱՏԵԼ ԵՎ ՄԱՔԱՌԵԼ ԼԵՆԻՆԱԲԱՐ



### ԼԵՆԻՆՅԱՆ ԳԱՂԱՓԱՐՆԵՐՈՎ ՀԱՐՍՏԱՑԱԾ

## СОДЕРЖАНИЕ

### ЛЕНИНИЗМ—СИМВОЛ СОЦИАЛЬНОГО ОБНОВЛЕНИЯ МИРА



### БЕССМЕРТНЫЙ ЛЕНИН В ПОЭЗИИ ЧАРЕНЦА



### ЖИТЬ, РАБОТАТЬ И БОРОТЬСЯ ПО-ЛЕНИНСКИ



### ВООРУЖЕННЫЕ ЛЕНИНСКИМИ ИДЕЯМИ





### Լենինիզմը աշխարհի սոցիալական նորացման խորհրդանիշն է

# ԼԵՆԻՆՅԱՆ ԻՄԱՍՏՆՈՒԹՅԱՄԲ, ՍՏԵՂԾԱՐԱՐ ՍԽՐԱՆՔՆԵՐՈՎ

*ԼՐԱՑԱՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ծննդյան հարյուրտասնամյակը, ավետաբեր մի տարեթիվ, որը պատշաճ արժանապատվությամբ ու ջերմ խանդաղատանքով նշում են ո՛չ միայն զարգացած սոցիալիզմի՝ սովետական մեր հայրենիքի, այլև սոցիալիզմ կառուցող եղբայրական երկրների կոմունիստներն ու բոլոր քաղաքացիները, աշխարհի կոմունիստական ու բանվորական կուսակցությունները, ինչպես և ողջ երկրագնդի կեղեքյալներն ու առաջավոր մարդկությունը:*

*Այսօր, երբ լենինիզմի հզորագույն հայրենիքի համայն աշխատավորությունն իր անմահ առաջնորդի հիմնադրած կուսակցության՝ ՍՄԿԿ-ի իմաստուն ղեկավարությամբ մեզ հասցրել է կոմունիզմի փուլը, դա նշանակում է, որ արդեն վաղուց կենսագործվում է Լենինի լուսաշող կանխատեսությունը՝ ապահովված է սոցիալիզմի վերջնական հաղթանակը:*

*Հիրավի, պատմության պրոգրեսի արդի ռեալ նկրտումը կոմունիստական հանրակարգի սլացքի ամրակայումն է, կապիտալիզմի ակնբախ գահավիժումը: Մեկնելով սոցիալիստական հեղափոխության անկապտելի օրինաչափությունից, Լենինը մեզ ուսուցել է, որ դասակարգային կռվի դիալեկտիկան անհամեմատ բարդ պրոցես է և հաղվադեպ՝ ուղղագիծ: Ուստի, սոցիալիստական հեղափոխությունը «...միայն ու գլխավորապես հեղափոխական պրոլետարների պայքարը չի լինի ամեն մի երկրում իր բուրժուազիայի դեմ,— ո՛չ, այն իմպերիալիզմի կողմից ճնշված բոլոր գաղութների ու երկրների, բոլոր կախյալ երկրների պայքարը կլինի միջազգային իմպերիալիզմի դեմ»* (Երկեր, հ. 30, *էջ 185):*

*Այնպես ընթացավ պատմությունը, ինչպես սոցիալիստական հեղափոխության հանճարն էր կանխատեսել: Մեր իսկ սերնդի աչքի առաջ, ընդամենը մի քանի տասնյակ տարիներում, ո՛չ միայն մի շարք երկրներ Մեծ Հոկտեմբերի ազատաբեր ղողանջներին արձագանքելով սոցիալիստական հունով ընթացան, և գոյավորվեց սոցիալիստական պետությունների մի հզոր սիստեմ, այլև առհավետ փուլ եկավ միջազգային իմպերիալիզմի գաղութային ու կախյալ երկրների համակարգը: Իսկ դա անհագնորեն ցնցեց իմպերիալիզմի միջազգային ամրոցը, որը մինչև օրս էլ մեկը մյուսի հետևից կորցնում է իրեն սնուցող երկրները՝ հօգուտ սոցիալիզմի: Այս իրադարձությունը բնականաբար գազազեցրել է կապիտալիզմի ո՛չ միայն գաղափարախոսներին, այլև միլիարդատեր ու միլիոնատեր այն մի բուռ մարդկանց, ովքեր «իրենց» մեծ կորուստները ետ խլելու համար անում են ամեն ստորություն ու վայրագություն, մինչև իսկ հրահրում ֆաշիստական հորդաներին ընդդեմ նոր աշխարհ ու նորոգ կյանք ստեղծողների, Լենինի ու նրա բազմամիլիոն հետևորդների, կեղեքված ու կեղեքվող ազգերի և ժողովուրդների:*

*Սակայն լենինյաններն արդեն քաջ գիտեն, որ լիովին հուսալի է այս «վերջին կռվի» նեցուկը՝ աշխարհի հզորագույն սոցիալիստական սիստեմը, որի հիմքերն արկանել է մեծագույն հեղափոխության ճարտարապետ Լենինը:*

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության թեպետ դժվարին, բայց միշտ հաղթական վերընթացն անցած վաթսուներեք տարիներին անհերքելիորեն ապացուցել է մարքսիզմ-լենինիզմի թե՛ արդարացիությունը, թե՛ կենսահաստատունությունը և թե նրա հաղթության անխուսափելիությունը:

Անդրադառնալով համաշխարհային պատմության վրա Մեծ Հոկտեմբերի ունեցած վիթխարի ներգործության նշանակությանը՝ Լ. Ի. Բրեժնևն ասել է. «Համաշխարհային պատմության իրադարձություններից ոչ մեկը մարդկության համար այնպիսի խոր, տևական հետևանքներ չի ունեցել, որքան Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը: Հոկտեմբերյան ամպրոպի փայլատակումները լուսավորեցին շատ երկրների ժողովուրդների ապագայի ճանապարհը» (Լենինյան կուրսով, հ. 6, էջ 746):

Համաշխարհային սոցիալիստական սիստեմի հզորացումը վկայող բազում իրողությունները Եվրոպայում, Ասիայում, Աֆրիկայում, Լատինական Ամերիկայում և այլուր ապացուցում են Լենինի գաղափարական հետևորդների միահամուռ հռչակած այն դարակազմիկ ռեալ բանաձևը, ըստ որի, «Համաշխարհային սոցիալիստական սիստեմը դառնում է մարդկային հասարակության զարգացման վճռողական գործոն» (տե՛ս Программные документы борьбы за мир, демократию и социализм, стр. 39):

Սոցիալիստական աշխարհի անկասելի վերընթացը, կապիտալիզմի օրավուր խորացող ճգնաժամերը սպառիչ կերպով բնորոշվեցին ՍՄԿԿ XXIV և XXV համագումարների փաստաթղթերում: Կուսակցության XXV համագումարին տված Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ Լ. Ի. Բրեժնևը հատկապես շեշտեց. «Սոցիալիզմի երկրների զարգացում, նրանց հզորության աճ, նրանց վարած միջազգային քաղաքականության բարերար ազդեցության ուժեղացում՝ահա թե որն է ներկայումս մարդկության սոցիալական առաջընթացի գլխավոր ուղղությունը: Սոցիալիզմի ձգողական ուժը է՛լ ավելի է մեծացել այն ճգնաժամի ֆոնի վրա, որ բռնկել է կապիտալիստական երկրներում» (ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, էջ 41):

Անցյալ դարի կեսերին, Եվրոպայի կապիտալիստական մի շարք երկրներում, պրոլետարական ազատագրական պայքարը միջազգային բնույթ ուներ և գերազանցապես ծավալվում էր հեղափոխական մարքսիզմի գաղափարական ազդեցության ներքո. Մարքսի ու Էնգելսի գլխավորությամբ կազմակերպվեց և սկսեց գործել I Ինտերնացիոնալը: Կոմունիստական կուսակցության մանիֆեստը, «բուրժուազիայի գլխին պայթած ամենասոսկալի արկը»՝ Մարքսի Կապիտալ-ն ու մյուս աշխատությունները, մեծապես խթանեցին միջազգային հեղափոխական շարժումը: Պատահական չէր, որ Բակունինի դեմ մղվող պայքարում Մարքսին սատարեց Ինտերնացիոնալի ռուսական սեկցիան:

Մարքսն ու Էնգելսը ոչինչ չէին խնայում օգնելու Փարիզյան կոմունայի մղած դասակարգային կռվին և հիացած կոմունարների սխրանքներով, անմիջապես դրվատեցին Կոմունայի խրոխտ մարտերն ու գործունեությունը: Ուշագրավ է, որ հեղափոխական պրոլետարիատի տակտիկայի վերաբերյալ նրանք նշել են, թե Կոմունան ապագա հասարակության վառ տիպարը հանդիսանալով, ցավոք, ժամանակին չգրոհեց Վերսալի վրա: Ըստ Մարքսի, Կոմունայի պատմական դասն այն է, որ գրոհող պրոլետարիատը պետք է ջարդի բուրժուական պետական մեքենան և հաստատի պրոլետարիատի դիկտատուրան: Նրա կարծիքով, Կոմունան օժտված էր ապագա հասարակության պետության բնորոշ հատկություններով: Կոմունարների թույլ տակտիկան, ղեկավար կուսակցական կազմակերպության բացակայությունը ցանկալի հաղթանակով չպսակեցին անմահ կոմունարների գերմարդկային ճիգերը: Փառաբանելով զոհված կոմունարների հերոսագործությունները՝ Մարքսը ողջ աշխարհի պրոլետարիատին ուսուցեց, որ պրոլետարական հեղափոխությունը չի հաղթանակի, եթե նրա ուժերը միահամուռ համախմբված չլինեն մեկ փորձված կենտրոնի շուրջը, զուրկ լինեն հաստատակամ գործող մարտակուռ ավանգարդից՝ հասարակական օրենքների զարգացման իմացությամբ զինված կուսակցությունից:

Գիտական կոմունիզմի հիմնադիրներ Կ. Մարքսն ու Ֆ. Էնգելսը, իրավամբ, մեծ հույսեր էին տածում Ռուսաստանում զարգացող բանվորական հեղափո-



խական շարժման նկատմամբ: Դա հասկանալի է, որովհետև, ինչպես նշել է Լենինը, Մարքսի ուսմունքն ամենազոր է, որովհետև այն ճշմարիտ է, որովհետև այն հիրավի արտահայտում է աշխատավոր մարդկանց արմատական շահերը, որովհետև Մարքսը պատասխանեց մարդկության առաջավոր մտքի հարուցած հարցերին, որովհետև այն կռթնում էր մարդկային գիտելիքների հաստատուն հիմքերին, կուլտուրայի հասումներին, որոնք ստեղծվել են մարդկության ողջ զարգացմամբ:

Լենինը նման համապարփակ ընդհանրացումներով ու ապագան մտունշող խոր գաղափարներով էր վարում միջազգային պրոլետարատական հեղափոխության նավը: Այդ տիտան նավավարը իր անմահ ուսուցիչների մասին գրել է. «Ես դեռևս «սիրահարված եմ» Մարքսին ու Էնգելսին և ոչ մի լուտանք նրանց հասցեին հանգիստ չեմ հանդուրժում: Ո՛չ, նրանք իսկական մարդիկ էին: Նրանցից պետք է սովորել: Մենք այդ բարձունքից չպետք է իջնենք» (ПСС, т. 49, стр. 378):

Հայտնի է, որ մարքսիզմի հիմնադիրների կանխատեսմամբ քսաներորդ դարում պրոլետարական հեղափոխական շարժման կենտրոնը Ռուսաստանը դարձավ: Սոցիալական, ազգային անօրինակ կեղեքումների, բախումների ու բռնությունների հետևանքով ցարական Ռուսաստանում ուժգին փոթորկում էր հեղափոխության ալեկոծ օվկիանը, իմպերիալիզմի շղթայի ամենաթույլ օղակը:

Իր բազմաթիվ հիմնարար ու դարակազմիկ աշխատություններում Լենինը բացահայտեց գահավիժող կապիտալիզմի ճգնաժամի, դասակարգային արյունալի բախումների, իմպերիալիստական տերությունների ու մագնատների գաղութատիրական պլաններին հազուրդ տվող պատերազմների, համաշխարհային այդ վայրագությունների մարդակուլ վիհերը, մարդկության փրկության միակ ելքը՝ կապիտալիզմի խորտակումը և կոմունիզմի հաստատումը:

Խորապես հետազոտելով իմպերիալիզմի փուլը թևակոխած միջազգային բանվորական շարժումը և, հատկապես, Ռուսաստանի հեղափոխական վերընթացը՝ Իլյիչը հստակ պատասխանեց դարաշրջանի հարցերի հարցին՝ Ի՞նչ անել: Լենինն այդ հարցին պատասխանեց մարգարեաբար. «...ռուսական ԲԱՆՎՈՐԸ, բոլոր դեմոկրատական տարրերի գլուխն անցած, ոտքի ելնելով՝ կտապալի միապետությունը և ՌՈՒՍԱԿԱՆ ՊՐՈԼԵՏԱՐԻԱՏԻՆ (ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ պրոլետարիատի հետ կողք-կողքի) բացահայտ քաղաքական պայքարի ուղիղ ճանապարհով կառաջնորդի դեպի ՀԱՂԹԱԿԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅՈՒՆ» (ԵԼԺ, հ. 1, էջ 377):

Բայց չէ՞ որ պատմության հավվագույն գիտակ Լենինն անդուլ ուսուցում էր իր համախոհներին ու զինակիցներին, որ «հեղափոխությունը իմաստուն, դժվարին և բարդ գիտություն է» (Երկեր, հ. 27, էջ 230— ընդգծումը մերն է):

Այստեղից տրամաբանորեն և պրակտիկայի պահանջով բխում է մի հարց. Իսկ ո՞վ և ինչպե՞ս է կոփելու հեղափոխական բանվորական ջոկատներին, Ռուսաստանի և ապա նրան հետևող ողջ աշխարհի աշխատավորներին տոգորելու հեղափոխության լենինյան այդ «բարդ», «դժվարին» և «իմաստուն գիտությամբ»: Բանվոր դասակարգի ավանգարդ՝ կոմունիստական կուսակցությունն իր քաղաքական, գաղափարախոսական և կազմակերպական անդուլ աշխատանքով: Նոր տիպի կուսակցություն էր այն՝ իր ծրագրով, կանոնադրությամբ, գործելակերպով ու գաղափարախոսությամբ— կատարյալ լենինյան կուսակցություն:

Պատմության և սոցիալ-քաղաքական օբյեկտիվ ու սուբյեկտիվ իրավիճակի թելադրանքով, պրոլետարական դասակարգը Ռուսաստանում օժտված էր մարդկությանն ազատագրելու առաքելությամբ ու կարողությամբ, իսկ լենինյան նոր տիպի կուսակցությունը զինեց նրան այնպիսի մեթոդոլոգիայով, ըստ որի հասարակական երևույթներն անհրաժեշտ է գնահատել դասակարգայնության հայեցակետից, քանզի «քաղաքականության մեջ մարդիկ միշտ եղել են ու միշտ կմնան խաբեության ու ինքնախաբեության հիմար զոհեր, մինչև որ չսովորեն ամեն տեսակի բարոյական, կրոնական, քաղաքական, սոցիալական ֆրազների, հայտարարությունների, խոստումների հետևում որոնել այս կամ այն դասակարգի շահերը» (Վ. Ի. Լենին, ԵԼԺ, հ. 23, էջ 54):

Հանդիսանալով հեղափոխական տեսության ու հեղափոխական քաղաքականության իմաստուն զոդողը, օժտված հանրային կյանքի անսահման բարդ կեցության դիալեկտիկական օրինաչափությունների բացահայտման և հետևողական կիրառման փայլուն ունակությամբ, Լենինն իր խորախույզ բանականության անջնջելի կնիքը դրոշմեց ապրած ու գալիք դարերի ծալքերի վրա։ Դիալեկտիկական մատերիալիզմի մեկնակետից խորապես ուսումնասիրելով իր ժամանակի հասարակական կյանքի տեղատվությունները ու մակընթացությունները, հեղափոխական, ռեֆորմիստական ու բացահայտ հակահեղափոխական հոսանքների բախումները, նա սկզբունքորեն կարևոր դրույթներով հարստացրեց մարքսիզմի բոլոր բաղկացուցիչ մասերը, նոր փուլ բացեց նրա զարգացման գործում։ Այո՛, անգնահատելի են մարքսիզմի հոյակապ մտքի գանձարանում ներդրած նրա իրոք գիտական արժույթները։

Լենինի ծննդյան 110-րդ տարեդարձի վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ կարդում ենք. իմպերիալիզմի մասին լենինյան ուսմունքը գաղափարատեսական ու մեթոդաբանական անգնահատելի ուղեցույց է աշխարհի հեղափոխականների համար։ Սոցիալիզմի ուղիով ընթացող երկրագնդի բոլոր հեղափոխականները հին աշխարհի դեմ մղվող դասակարգային մարտերում ամենուր առաջնորդվում են XX դարի հանճարեղ կոմունիստի՝ Լենինի մշակած՝ սոցիալիստական հեղափոխության և պրոլետարիատի դիկտատուրայի, կուսակցության մասին, պրոլետարիատի դասակարգային դաշնակիցների, սոցիալական և ազգային ազատագրության անքակտելի կապի, խաղաղ գոյակցության, սոցիալիստական հայրենիքի պաշտպանության, նրա տեսական ստեղծագործության պսակը հանդիսացող սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման ուղիների վերաբերյալ գիտությամբ։

Այսօր արդեն աշխարհը գիտե, որ Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության փառավոր հաղթանակը Ռուսաստանում պատմական իրողություն դարձավ պրոլետարիատի անմահ առաջնորդի մշակած դասակարգային անողոք կռվի, ստրատեգիայի ու ճկուն տակտիկայի, նրա ստեղծած բոլշևիկյան կուսակցության գաղափարական կոփվածության շնորհիվ։

Ուստի և բնավ պատահական չէ, որ Լենինի մահվան առնչությամբ Ռոմեն Ռոլանը գրել է. ես հսկայական նշանակություն եմ տալիս մեծագույն անձնավորություններին ու ջերմագին սքանչանում եմ Լենինի անձավորությամբ։ Մի այլ առավել հզոր անձնավորություն ես չգիտեմ արդի Եվրոպայում։ Նրա կամքն այնքան խորն է ակոսել զառամած մարդկության քաոսային օվկիանոսը, որ դեռևս երկար ժամանակ չի անհետանա նրա հետքը ալիքներում և այժմ իսկ, բոլոր առագաստները բացած, առաջ՝ դեպի նոր աշխարհն է սլանում նրա նավը՝ մրրիկներին հակընդդեմ։ Մարդկությունը դեռ երբեք չի ծնել նրա պես մեծ առաջնորդ, մարդկանց ուսուցիչ, որին այնքան խորթ լինեին անձնական շահերը։ Տակավին կենդանության ժամանակ նրա հոգևոր կերպարը դրոշմվել էր մարդկանց սրտերում, որն անմահ կմնա առհավետ (տե՛ս Собр. соч., т. 13, М., 1958, стр. 117)։

Անհնար է լիովին պատկերացնել Լենինի և նրա ուսմունքի վեհությունն ու ճշմարտացիությունը՝ առանց լավ իմանալու ո՛չ միայն Ռուսաստանի, այլև Արևմուտքի այն քաղաքական հոսանքները, որոնք ուղղակի կամ զարտուղի կերպով պայքարում էին ընդդեմ մարքսիզմ-լենինիզմի։ Սաստիկ դժվար էր հիմնովին մերկացնել ու պարտության մատնել մարքսիզմի ռենեգատներ է. Բեռնշտայնին ու Կ. Կաուցկուն, էկոնոմիստներին, էսեռներին, մենշևիկներին ու Եվրոպայի տարագույն, կեղծ սոցիալիստներին, «ձախ» և աջ օպորտունիստներին, որոնց պառլամենտարիզմի ու պացիֆիզմի դրոշի ներքո անձեռնմխելի էր մնում կապիտալիզմի դարավոր կարգը։ Սակայն դեպքերն արագացան։

Պարտություն կրեցին II Ինտերնացիոնալի ռենեգատները։ Այստեղ ևս հաղթանակեց լենինիզմը։ «Առանց երկաթյա և պայքարում կոփված կուսակցության, առանց այնպիսի կուսակցության,— շեշտել է Լենինը,— որը վայելի այն ամենի վստահությունը, ինչ ազնիվ է տվյալ դասակարգի մեջ, առանց այնպիսի կուսակցության, որը կարողանա հետևել մասսայի տրամադրությանը և ազդել նրա վրա՝ անհնարին է հաջող կերպով այդպիսի պայքար մղել» (Երկեր, հ. 31,



էջ 35)։ Սակայն, ըստ Լենինի, հաղթության գրավականի միայն այս գործոնները բավարար չեն։ Նա միշտ զգուշացնում էր իր կինակիցներին, որ նոր տիպի, պրոլետարական կուսակցության ղեկավարը պետք է գիտենա, որ հեղափոխական տեսության միավորումը հեղափոխական կռվի հետ, դա այն միավորումն է, առանց որի մարքսիզմը կդառնա բրենտանիզմ, ստրուվիզմ, զոմբարտիզմ։ Մարքսի վարդապետությունը դասակարգային կռվի տեսությունն ու պրակտիկան կապակցում էր մի անքակտելի ամբողջության մեջ, գրել է Լենինը (տե՛ս ԵԼԺ, հ. 14, էջ 464)։

Լենինն ուսուցանում էր. «Կյանքի, պրակտիկայի տեսակետը պետք է լինի իմացության տեսության առաջին ու հիմնական տեսակետը։ Եվ նա անխուսափելիորեն կհանգեցնի մատերիալիզմին՝ շեմքից մի կողմ նետելով պրոֆեսորական սխոլաստիկայի անվերջ հերյուրանքները։ Իհարկե, այստեղ չպետք է մոռանալ, որ պրակտիկայի չափանիշը բնավ չի կարող ըստ էության լիակատար կերպով հաստատել կամ հերքել որևիցե մարդկային պատկերացում։ Այդ չափանիշը ևս այնքան «անորոշ» է, որ թույլ չի տալիս մարդկային գիտելիքներին դառնալ «բացարձակ», և միևնույն ժամանակ այնքան որոշակի է, որ թույլ է տալիս անխնա պայքար մղել իդեալիզմի և ագնոստիցիզմի բոլոր տարատեսակությունների դեմ» (ԵԼԺ, հ. 18, էջ 177)։

Լենինյան ուղիով ընթացող միլիոնավոր աշխատավորները կարող են իրավամբ հպարտանալ, որ մեր ապրած դարում (ինչպես և նախորդ դարերում) և ո՛չ մի կուսակցություն չի ունեցել ամբողջ գոյի էությունը ու դրա զարգացման դիալեկտիկան նրա չափ խոր ըմբռնող առաջնորդ։

Տեսության չգոյությունը,— գրել է Լենինը,— հեղափոխական ուղղությունը զրկում է գոյության իրավունքից և վաղ թե ուշ անխուսափելիորեն նրան դատապարտում է քաղաքական սնանկության (տե՛ս ԵԼԺ, հ. 6, էջ 469)։ Ցավոք, ինչպես այլ ժողովուրդների, նույնպես և մեր պատմության ընթացքում եղել ու «գործել են» տեսությունից զուրկ և շատ շուտով սնանկացած թշվառամիտների կուսակցություններ։

Մինչդեռ Լենինի գաղափարական բազմահարուստ ժառանգությունը, նրա ուսմունքի հեղափոխական քննադատական ոգին, հետևողականությունն ու հաստատակամությունը օպորտունիստական աղճատումներից մարքսիզմի արմատական սկզբունքները պաշտպանելու գործում, նրա ողջ կյանքը հեղափոխական մտքի ու հեղափոխական գործողության անսպառ աղբյուր են արդի կոմունիստական, բանվորական և ազգային-ազատագրական շարժման համար։

Մեծ Հոկտեմբերի հաղթանակից առ այսօր մարդկային ողջ պատմության գլխավոր բովանդակությունը, գրել է Լենինը, կապիտալիզմի ու նրա հետքերի ոչնչացումն է, կոմունիստական կարգի հաստատումը, որով և մարդկության պատմությունը նոր դարագլուխ է թևակոխել։

Լենինյան այս սկզբունքային դրույթն արտացոլված է ՍՄԿԿ ծրագրում. արդի դարաշրջանը, որի հիմնական բովանդակությունը անցումն է կապիտալիզմից սոցիալիզմին, երկու հակադիր հասարակարգերի պայքարի դարաշրջանն է, սոցիալիստական ու ազգային-ազատագրական հեղափոխությունների դարաշրջանը, իմպերիալիզմի փլուզման դարաշրջանը, գաղութային սիստեմի լիկվիդացման, նորանոր ժողովուրդների սոցիալիզմի ուղիով ընթանալու, համաշխարհային մասշտաբով սոցիալիզմի ու կոմունիզմի հաղթանակի դարաշրջանը։ Արդի դարաշրջանի կենտրոնում միջազգային բանվոր դասակարգն է ու այն մարմնավորող գլխավոր ուժը՝ սոցիալիզմի համաշխարհային սիստեմը։

ՍՄԿԿ այս բանաձևումը ցայտուն կերպով դրսևորում է ողջ մարդկության անկասելի երթի ամենառեալ նկրտումը՝ կոմունիզմի հաղթանակը կապիտալիզմի նկատմամբ։ Կասկածից վեր է, որ ՍՍՀՄ-ի դեմ իմպերիալիզմի ծավալած արդի պրովոկացիոն կամպանիան ողջ կապիտալիզմի ճգնաժամի արտահայտությունն է։

Ի դեպ, հոգեվարք ապրող կապիտալիզմի մեծ ու փոքր սպասարկուներից շատերը մարդու իրավունքի ու ազատության վերաբերյալ բարբաջանքը հասցրել են պետական քաղաքականության «մակարդակի»։ Մինչդեռ, շատ վաղուց Անատոլ Ֆրանսը շեշտել է, թե կապիտալի աշխարհում ազատության

նրանց դերը հասարակության մեջ ճանաչել են ժողովուրդները և ոչ ոք չի կարող նրանցից խլել այն»,— նշել է ընկեր Լ. Ի. Բրեժնևը:

Հիրավի, նյութական ու հոգևոր այն վիթխարի հաջողությունները, որոնցով այսօր իրավամբ հպարտանում են մեծ Լենինի դրոշով ընթացողները, ստեղծվել են դժվարին, տևական և հաճախ գերմարդկային ջանքերով ու պայքարով: Իսկ պատմական այդ պայքարը, որը հսկայական ծավալով ու խորությամբ վերափոխել է աշխարհը հօգուտ կոմունիստական ֆորմացիայի հաստատման՝ եղել է զարմանալի արդյունաբեր: Համաշխարհային պատմության թատերաբեմում կատարված այդ ոգեշնչող իրադարձությունն աշխարհը դարձրել է այնքան նոր, որ առաջին հայացքից դժվար է ճանաչել այն:

Մեր օրերում,— ասել է Լ. Ի. Բրեժնևը,— երբ հասարակական զարգացման ողջ ընթացքը անողոքաբար մոտեցնում է կապիտալիզմի խորտակումը, հատուկ ուժգնությամբ են հնչում Լենինի խոսքերն այն մասին, որ մարքսիզմը հարցերը դնում է «ո՛չ միայն անցյալը լուսաբանելու իմաստով, այլև ապագայի աներկյուղ կանխատեսման իմաստով և աներկյուղ պրակտիկ գործունեությամբ, որն ուղղված է նրա կենսագործմանը»: Զբաղվելով այսօրով, լուծելով արդիականության կենսական պրոբլեմները, մենք համադրում ենք մեր գործողությունները մեր իդեալների, հասարակական զարգացման մերձակա ու հեռավոր հեռանկարների հետ: Մենք խորհում ենք ապագայի մասին և ստեղծում ենք այն (տե՛ս Լենինյան կուրսով, հ. 2, էջ 817—818):

Խոշոր և լուծման կարոտ խնդիրներ կան մեր առաջընթացի ոչ միայն սոցիալ-տնտեսական շինարարության մարզերում, այլև դաստիարակության, նոր մարդու կազմավորման, բուրժուական գաղափարախոսության վարձու մունետիկների մերկացման ոլորտում: Այս առումով, մեզ՝ գաղափարախոսական ճակատի աշխատողներիս համար առաջնագույն ուղեցույց է ՍՄԿԿ Կենտկոմի՝ «Գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի հետագա բարելավման մասին» որոշումը, որը, ինչպես շեշտում է ՍՄԿԿ Կենտկոմի քարտուղար Մ. Ա. Սուսլովը, խոշոր իրադարձություն հանդիսացավ կուսակցության, ամբողջ ժողովրդի գաղափարաքաղաքական կյանքում:

Մեր գաղափարախոսական աշխատանքում մենք պետք է հաշվի առնենք, ինչպես նշեց ընկեր Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ XXV համագումարում, որ «Համաշխարհային քաղաքականության մեջ կատարված դրական տեղաշարժերը, լարվածության թուլացումը բարենպաստ հնարավորություններ են ստեղծել սոցիալիզմի գաղափարների լայն տարածման համար: Բայց, մյուս կողմից երկու սիստեմների գաղափարական հակամարտությունը դառնում է ավելի ակտիվ, իմպերիալիստական պրոպագանդան է՛լ ավելի խորամանկ»:

Մեր գաղափարախոսական աշխատողներից պահանջվում է հասարակական զարգացման արդի պրոբլեմների ստեղծագործական մշակման հիման վրա ուժեղացնել պայքարը բուրժուական գաղափարախոսության դեմ, աջ և «ձախ» օպորտունիզմի դեմ (Լենինյան ուղիով, № 11, էջ 15—16):

Կուսակցության այս ղեկավար դրույթը խիստ հրատապություն է հաղորդում նոր մարդու մտածելակերպի ու գործելակերպի կոմունիստական կազմավորման պրոբլեմին: Իսկ այդ նշանակում է, որ սովետական մարդկանց գաղափարաքաղաքական դաստիարակչական տևական աշխատանքի նպատակը կադրերին մարքս-լենինյան գիտությամբ զինելն է, աշխատավորներին կոմունիստական աշխարհայացքով տոգորելը: Ուրեմն մեր գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքը կոչված է ո՛չ միայն լիովին ապահովելու ճանաչողական ու պրակտիկ գործունեության միասնության արդյունավետ կիրառումը, այլև սիստեմատիկաբար գործի վերածելու Կենտկոմի վերոհիշյալ ծրագրային որոշման պահանջը: Անհրաժեշտ է իրականում հասնել նրան, որ նոր կյանք ստեղծողների առօրյան համակված լինի այդ որոշման պահանջի կենսագործման ըմբռնմամբ, այսինքն՝ «…իմացությունը վերածվի համոզմունքի, գործողության ուղեցույցի, սովետական մարդու ակտիվ կենսաուժերը նվիրում է ընդհանուր գործին և անհաշտ կերպով հանդես է գալիս խորթ գաղափարախոսության ու բարոյախոսության բոլոր դրսևորումների դեմ»:



Այստեղից հետևում է, որ բուրժուական աշխարհի հակակոմունիստական պրոպագանդայի բոլոր մեթոդներն ու խարդավանքները պետք է մնան մարքսիզմ-լենինիզմի հզորագույն գաղափարամարտի խորտակիչ կրակի կիզակետում: Անհրաժեշտ է անզիջում պայքար մղել կապիտալի կամակատարների, կեղծիքի, ստի, հերյուրանքի ու պրովոկացիայի «գործամոլների» դեմ, ովքեր ձգտում են ի չիք դարձնել միջազգային լարվածության թուլացումը, ովքեր ստոր միջոցներով փորձում են փրկել կործանման դատապարտված կապիտալիզմի սիստեմը, մարդու կեղեքման ու ստրկության հավերժացման, կողոպտիչների դարավոր հաստատությունը:

Կասկածից վեր է, որ նոր մարդու լիակատար դաստիարակության համար մեր հայրենիքն այժմ օժտված է հոգևոր և նյութական բոլոր անհրաժեշտ նախադրյալներով: Ուստի, այժմ մեր գլխավոր խնդիրն է դաստիարակչական գործը, կուսակցական պրոֆեսիոնալ, տնտեսագիտական ուսուցումը վարողների ճիշտ ընտրությունը:

ՍՄԿԿ-ն շարունակում է իրականացնել իր վեհ նպատակը՝ կառուցել կոմունիստական հասարակարգը: Ողջ ժողովուրդը, հավանություն տալով սովետական պետության խաղաղասիրական և ստեղծագործ կուրսին, իր անձնդրոհ աշխատանքով շեն ու ճոխ է դարձնում սովետական հայրենիքը:

Պատասխանելով «Պրավդա» լրագրի թղթակցի հարցերին, Լ. Ի. Բրեժնևն ասաց. «Մեր ժողովուրդը, մեր երկիրը հաստատ քայլերով ընթանում են կոմունիստական շինարարության ուղիով, կատարելով կուսակցության կանխանշումները՝ տասներորդ հնգամյակի առաջադրանքները: Սովետական մարդիկ, արտասահմանյան մեր բարեկամները կարող են վստահ լինել, որ լենինյան արտաքին քաղաքական կուրսն անսասան է: Այդ կուրսը սահմանված է ՍՄԿԿ-ի համագումարների որոշումներով, մարմնավորվում է մեր ողջ արտաքին քաղաքական գործունեության մեջ: Այդ կուրսը հետևողական խաղաղասիրությունը շաղկապում է ագրեսիային վճռական հակահարված հասցնելու հետ: Այդ կուրսն իրեն արդարացրել է անցած տասնամյակներում, մենք դրան կհետևենք նաև առաջիկայում: Ոչ ոք մեզ չի շեղի այդ կուրսից»:

Լենինը մեզ ուսուցել է, իսկ պատմությունն իրահռելի ընթացքով ապացուցել, որ իմպերիալիստական միլիտարիզմը սպառնում է վտանգել մարդկային հասարակության գոյությունը՝ բուն պայմաններն իսկ խարխլելով (տե՛ս Երկեր, հ. 27, էջ 525): Իմպերիալիստական պատերազմների փակուղուց մարդկությանը միայն պրոլետարական սոցիալիստական հեղափոխությունը կարող է դուրս բերել,— գրել է Լենինը (ПСС, т. 38, стр. 87):

Սովետական ժողովուրդը շարունակում է իր խաղաղասեր կյանքի կերտման մեղվաջան աշխատանքը: Միութենական հանրապետությունների Գերագույն սովետների ընտրությունները մի անգամ ևս ցուցադրեցին ողջ ժողովրդի կուռ համախմբվածությունը ՍՄԿԿ-ի լենինյան դրոշի ներքո: Ընտրություններն անցան քաղաքական բարձր կազմակերպվածությամբ: Մի անգամ ևս դրսևորվեց մեր ժողովրդի լիարուռն հավանությունը կուսակցության վարած արտաքին ու ներքին իմաստուն քաղաքականությանը:

Մեր ասածի ակնբախ վկայությունն է ՍՍՀՄ իրավահավասար եղբայրական հանրապետությունը՝ Սովետական Հայաստանը, որը բարգավաճել ու մեծապես զարգացել է սովետական 60 տարիներին: Բավական է հիշատակել, որ նախորդ չորս տարիների համեմատությամբ հանրապետության ազգային եկամուտն ավելացել է 46,2, արդյունաբերական հիմնական արտադրաֆոնդերը՝ 60,1 տոկոսով: Հայաստանի բնակչությունն անցած հինգ տարիներին հանրային սպառման ֆոնդերից ստացել է 4,6 մլրդ ռուբլի վճարումներ և արտոնության գումարներ, իսկ մեկ շնչին ընկնող եկամուտներն ավելացել են 22,4, կոլտնտեսականների աշխատանքի հատուցումը՝ 19,6 տոկոսով:

Հանրապետության արդյունաբերության ու գյուղատնտեսության աշխատավորների ձեռք բերած հաջողությունների համար, ահա չորրորդ տարին է, ինչ Հայաստանը արժանանում է բարձրագույն գնահատանքի՝ ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշին: Իսկ մայրաքաղաք Երևանն այդ պատվին արժանացավ հինգերորդ ան-

գամ։ Հանրապետության սոցմրցման առաջավորների մի ստվար խումբ արժանացել է կառավարական բարձր պարգևների։

Սովետական Հայաստանի աշխատավորները նորանոր նախաձեռնություններով դիմավորեցին սիրելի և անմոռաց առաջնորդի՝ Վ. Ի. Լենինի ծննդյան 110-րդ տարեդարձը, խոստանալով գերակատարել այս տարվա պլաններն ու սոցիալիստական պարտավորությունները։

Հայաստանի ատոմային էլեկտրակայանի շինարարներին, մոնտաժողներին, շահագործայիններին, մեքենաշինարարներին, կառույցի բոլոր մասնակիցներին ընկեր Լ. Ի. Բրեժնևի հղած շնորհավորանքում ասված է. «ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն ի սրտե շնորհավորում է ձեզ Հայաստանի ատոմային էլեկտրակայանի շինարարության հաջող ավարտման և 410 հազար կիլովատ հզորությամբ երկրորդ էներգաբլոկի գործարկման առթիվ։

Աշխատանքային այդ նվերը, որով դուք հայրենիքին ուրախացրիք Վ. Ի. Լենինի ծննդյան 110-րդ տարեդարձի շեմին, էլեկտրակայանի կառուցման բոլոր մասնակիցների նպատակասլաց աշխատանքի, ստեղծագործական նախաձեռնության և ՍՄԿԿ XXV համագումարի մշակած՝ ատոմային էներգետիկայի արագ զարգացման ծրագրի իրականացման համար բարձր պատասխանատվության արգասիքն է...

Ուրախալի է նշել, որ ատոմային էլեկտրակայանի շինարարության ժամկետների կրճատման հետ մեկտեղ ապահովվել է առաջին էներգաբլոկի նախագծային, տեխնիկատնտեսական ցուցանիշների հաջող յուրացումը, էլեկտրաէներգիայի արտադրության արդյունավետության բարձրացումը։

Ձեզ, թանկագին ընկերնե՛ր, տասներորդ հնգամյակի եզրափակիչ տարում մաղթում եմ քաջառողջություն և աշխատանքային նոր հաջողություններ՝ ի բարօրություն մեր բազմազգ հայրենիքի»։

Հանրապետության աշխատավորները խոր բերկրանքով ու երախտագիտությամբ ընդունեցին ընկեր Լ. Ի. Բրեժնևի հեռագիր-շնորհավորանքը հայկական ատոմային էլեկտրակայանի երկրորդ էներգաբլոկի գործարկման առթիվ։

Հանրապետության սոցիալիստական մրցության առաջավորները հաստատակամությամբ որոշեցին ոչ մի ջանք չխնայել Լենինի ծննդյան 110-րդ տարեդարձի տարին, ՀԿԿ կազմավորման ու Հայաստանում սովետական կարգերի հաստատման 60-ամյակը համարել հարվածային աշխատանքի, լենինաբար աշխատելու տարի, այն ավարտել աշխատանքային մեծագործություններով, պլանների ու սոցպարտավորությունների գերակատարմամբ։

Մեր կուսակցությունը հոբելյանները համարում է ստեղծագործական խթաններ նորանոր հաջողությունների հասնելու համար։ Արդ, լսենք ՀԿԿ Կենտկոմի առաջին քարտուղար Կ. Ս. Դեմիրճյանին. «Մեր պարտքն է, ավելի լայնորեն ծավալելով սոցիալիստական մրցությունը, պաշտպանելով ու տարածելով ուսանելի փորձը, աշխատանքի առաջավոր ձևերն ու մեթոդները, մեր ամբողջ եռանդը, նախաձեռնությունը, ուժերը, կարողությունն ու գիտելիքները ի սպաս դնենք հանրապետության զարգացման ամբողջ ծրագրի կատարմանը և լավ հիմք ստեղծենք տասնմեկերորդ հնգամյակի հաջող սկիզբը դնելու համար, նոր, վառ էջ գրենք Սովետական Հայաստանի աշխատավորների փառավոր հաղթանակների պատմության մեջ, որոնք ՍՍՀՄ եղբայրական ժողովուրդների հետ միասին, օրավուր ամրապնդում են մեր սոցիալիստական մեծ հայրենիքի տնտեսական ու պաշտպանական հզորությունը»։

---

# ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ԼԵՆԻՆՅԱՆ ԾՐԱԳԻՐԸ

**Ջ. Ս. ԿԻՐԱԿՈՍՅԱՆ**
Պատմական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

Մեծ է Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՎԱՆԴԸ սոցիալիստական արտաքին քաղաքականության մշակման ու իրականացման գործում։ Այդ քաղաքականությունն ուղղված է աշխարհում հումանիզմի, արդարության ու խաղաղության հաստատման նպատակին։ Լենինի անվան հետ է կապված սոցիալիստական պետության արտաքին քաղաքական կուրսի գիտական հիմնավորումը, պրոլետարական ինտերնացիոնալիզմի և խաղաղ գոյակցության հիմնարար սկզբունքների մշակումը։ Սովետական արտաքին քաղաքականությունը Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության ծնունդն է, որի կենսահաստատ գաղափարները դարձել են աշխարհի արմատական վերակերտման վճռական գործոններից մեկը։

Լենինը մշակեց պրոլետարական պետության արտաքին քաղաքականության նոր կուրս. խզում թալանչիական բուրժուական քաղաքականության ու դիվանագիտության հետ, աջակցում գաղութների ազատագրությանն ու ազգերի ինքնորոշմանը, դաշինք առաջադեմ երկրների ու ճնշված ժողովուրդների հեղափոխական ջոկատի հետ՝ ընդդեմ իմպերիալիստների, խաղաղության պաշտպանություն՝ բոլոր ժողովուրդների իրավունքները հարգելու հիման վրա։

Լենինի աշխատություններում ու ելույթներում, նրա ղեկավարությամբ մշակված փաստաթղթերում և դիվանագիտական ակցիաներում գիտականորեն հիմնավորվել են սովետական պետության արտաքին քաղաքականության սկզբունքները, խնդիրները, մեթոդներն ու ձևերը։

«Հաղթանակած սոցիալիզմի առաջին պետությունը,— նշել է Լ. Ի. Բրեժնևը,— իր դրոշակի վրա առհավետ գրել է «խաղաղություն» բառը որպես իր արտաքին քաղաքականության բարձրագույն սկզբունք, որ համապատասխանում է սեփական ժողովրդի և մոլորակի մյուս բոլոր ժողովուրդների շահերին» (Լենինյան կուրսով, հ. 6, էջ 489—490)։

Վ. Ի. Լենինը արտաքին քաղաքականության հարցերում վճռականությունն ու սկզբունքայնությունը զուգակցում էր ճկունության հետ, հանուն սովետական պետության և համաշխարհային հեղափոխական ուժերի շահերի փոխզիջումներ անելու ունակության հետ։ Նա նման փոխզիջում էր համարում Բրեստի հաշտությունը, միաժամանակ մերժում էր անսկզբունքային փոխզիջումները։

Երիտասարդ սովետական պետության դեկրետներից մեկում նշվում էր, որ այն «իր միջազգային հարաբերություններում ելնում է մեծ և փոքր ազգերի լիիրավ հավասարության ճանաչումից»։ Նման մոտեցումը միանգամայն նոր էր ու անսովոր. պետություններից և ոչ մեկը նախկինում այդքան հետևողականորեն դեմոկրատական միջազգային-իրավական դիրք չէր գրավել։

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության հաղթանակից հետո համաշխարհային պրոլետարիատի և համաշխարհային բուրժուազիայի միջև դասակարգային հակամարտությունը տեղափոխվեց միջազգային հարա-

բերությունների ոլորտը։ Այդ պահից ի վեր միջազգային կյանքի առանցքը դարձավ երկու սոցիալ-քաղաքական սիստեմների մրցապայքարը։ Չնայած նոր սոցիալական կարգի հանդեպ ունեցած ատելությանն ու թշնամանքին, իմպերիալիստական տերությունները ստիպված էին զարգացնել իրենց հարաբերությունները սոցիալիզմի երկրների հետ։ «Կա ավելի մեծ ուժ, քան թշնամի կառավարություններից կամ դասակարգերից ամեն մեկի ցանկությունը, կամքն ու վճիռը,— շեշտել է Լենինը,— այդ ուժը համաշխարհային ընդհանուր տնտեսական հարաբերություններն են, որոնք նրանց ստիպում են ոտք դնելու մեզ հետ հարաբերություններ պահպանելու այդ ուղին» (Երկեր, հ. 33, էջ 172)։ Կյանքը լիովին հաստատեց լենինյան այդ դրույթը։ Ընդհանրացնելով տարբեր հասարակարգ ունեցող պետությունների միջև հարաբերությունների փորձը, ՍՄԿԿ-ն իր ծրագրում շեշտել է, որ «սոցիալիստական և կապիտալիստական պետությունների խաղաղ գոյակցությունը մարդկային հասարակության զարգացման օբյեկտիվ անհրաժեշտությունն է» (ՍՄԿԿ ծրագիրը, էջ 91)։

Մեր պետության գոյության ողջ ընթացքում արտաքին քաղաքականության հարցերը եղել ու մնում են կուսակցության Կենտկոմի, նրա քաղբյուրոյի տեսադաշտում։ Դրանք խորապես վերլուծվում են կուսակցության համագումարների փաստաթղթերում։ Մեր կուսակցության ղեկավարությունը միջազգային պրոբլեմների վերաբերյալ կարծիքներ է փոխանակում մյուս կոմունիստական ու բանվորական կուսակցությունների ղեկավարների և եղբայրական սոցիալիստական երկրների կառավարությունների հետ։ Այդպիսի պրակտիկան հնարավոր է դարձնում առավել հաջողությամբ պաշտպանելու սոցիալիզմի շահերը համաշխարհային ասպարեզում։

Արտահայտելով սովետական ժողովրդի շահերը, արդի դարաշրջանում բովանդակությամբ սոցիալիստական, էությամբ իրոք դեմոկրատական լենինյան արտաքին քաղաքականությունը միաժամանակ համապատասխանում է մարդկության ճնշող մեծամասնության շահերին։ Այդ քաղաքականությունը ո՛չ միայն հռչակեց մեծ ու փոքր բոլոր ազգերի իրավահավասարության սկզբունքները, այլև ամեն ինչ արեց միջազգային հարաբերությունների պրակտիկայում դրանց ռեալ մարմնավորման համար։ Եվ միանգամայն օրինաչափ է, որ Լենինի առաջադրած սկզբունքները դարձան սոցիալիստական համագործակցության երկրների արտաքին քաղաքականության կուրսի հիմքը, արժանանում են բազմաթիվ զարգացող երկրների աջակցությանն ու հավանությանը։ Լենինիզմի արտաքին քաղաքականության դոկտրինան՝ խաղաղության դոկտրինան, մեր ժամանակներում դարձել է ողջ միջազգային քաղաքականության կարևորագույն գործոնը, որի դերն ու ազդեցությունը համաշխարհային իրադարձությունների ընթացքի վրա մշտապես աճում է։

Համաշխարհային քաղաքականության վրա ՍՍՀՄ-ի ազդեցության հսկայական աճը, զարգացման ներքին ու արտաքին գործոնների սերտ կապն անհրաժեշտ դարձրին նոր սահմանադրության մեջ սովետական արտաքին քաղաքականության վերաբերյալ առանձին գլխի զետեղումը, որի երեք հոդվածներում շարադրված են դրա սկզբունքային հիմունքները։ Սովետական պետությունը, նշված է 28-րդ հոդվածում, «անշեղորեն վարում է խաղաղության լենինյան քաղաքականություն, հանդես է գալիս ժողովուրդների անվտանգության ամրապնդման և միջազգային լայն համագործակցության օգտին»։ Արտաքին քաղաքականությունը, ասված է այնուհետև, «նպատակամղված է ՍՍՀՄ-ում կոմունիզմի կառուցման միջազգային բարենպաստ պայմանների ապահովմանը, Սովետական Միության պետական շահերի պաշտպանությանը, համաշխարհային սոցիալիզմի դիրքերի ամրապնդմանը, ազգային ազատագրության ու սոցիալական առաջընթացի համար ժողովուրդների պայքարի պաշտպանությանը, ագրեսիվ պատերազմների կանխմանը, ընդհանուր և լրիվ զինաթափման հասնելուն և տարբեր սոցիալական կարգ ունեցող պետությունների խաղաղ գոյակցության սկզբունքի հետևողական իրականացմանը»։ Հաստատվում է, որ ՍՍՀՄ-ում պատերազմի պրոպագանդան օրենքով արգելվում է։



Մյուս պետությունների հետ Սովետական Միության հարաբերությունները խարսխվում են սուվերեն հավասարության, ուժ գործադրելուց կամ ուժով սպառնալուց փոխադարձ հրաժարման, սահմանների անխախտելիության, պետությունների տերիտորիալ ամբողջականության, վեճերի խաղաղ կարգավորման, ներքին գործերին չմիջամտելու, մարդու իրավունքների և հիմնական ազատությունների հարգման, ժողովուրդների իրավահավասարության և իրենց բախտը տնօրինելու իրավունքի, պետությունների համագործակցության, միջազգային պարտավորությունների բարեխիղճ կատարման սկզբունքների պահպանման վրա։

Մեր կուսակցությունն իր արտաքին-քաղաքական գործունեության մեջ առաջնակարգ ուշադրություն է նվիրում սոցիալիստական երկրների, նրանց ղեկավարող կոմունիստական ու բանվորական կուսակցությունների հետ ունեցած հարաբերություններին։ Վարելով այս կուրսը, ՍՄԿԿ-ն ղեկավարվում է պրոլետարական, սոցիալիստական ինտերնացիոնալիզմի սկզբունքներով, ազատ երկրների մեծ ընկերակցության, ժողովուրդների բարեկամության, միասնության ու համագործակցության ամրապնդման սկզբունքներով։ Միջազգային ասպարեզում այս հիմքի վրա է մղվում համատեղ հաջող պայքարը հանուն խաղաղության ու ժողովուրդների անվտանգության։

Սոցիալիստական պետությունների ամրապնդվող համագործակցության կարևորագույն դրսևորումներից է երկկողմանի և բազմակողմանի հիման վրա արտաքին-քաղաքական կուրսերի կոորդինացիան, որի շնորհիվ ՍՍՀՄ-ը և եղբայրական մյուս երկրները կարողացան վճռական ավանդ մուծել խաղաղության ամրապնդման և միջազգային անվտանգության գործում։ Այս առումով առաջնակարգ դեր ունի սոցիալիստական երկրների պաշտպանական կազմակերպությունը— Վարշավայի պայմանագիրը։

Հանուն խաղաղության ՍՍՀՄ-ի պայքարը ներթափանցված է խորապես դասակարգային, հեղափոխական բովանդակությամբ։ Դրա նպատակն է իմպերիալիստական բուրժուազիայի ամենաագրեսիվ շրջանների մեքենայությունների մերկացումն ու մեկուսացումը, հանուն խաղաղության պաշտպանության հասարակական կարծիքի մոբիլիզացումը, ժողովուրդների ճնշմանն ու ստրկացմանը ձգտող հետադիմական ուժերի ծրագրերի ձախողումը։ ՍՄԿԿ-ն ու սովետական կառավարությունը անդուլ ձգտում են, որ ՍՍՀՄ և սոցիալիստական մյուս երկրների շահերը պաշտպանելիս, ՍՍՀՄ արտաքին քաղաքականությունը լինի հետևողական, հաստատակամ ու սկզբունքային, ագրեսորների նկատմամբ անհաշտ և միաժամանակ՝ ճկուն ու ռեալիստական։

Գաղափարախոսական դիվերսիաների մերկացումը, դրանց դեմ անհաշտ պայքարը, մարքս-լենինյան տեսության պաշտպանությունը կարևորագույն պայման են խաղաղ գոյակցության շրջանակներում կապիտալիզմի երկրների հետ հարաբերությունները զարգացնելիս։

Անցած տասնամյակում միջազգային իրադարձությունների ընթացքն ակնբախորեն ցույց տվեց, որ լարվածության թուլացումն արդյունք էր արդի դարաշրջանի օբյեկտիվ պահանջմունքների, այն համապատասխանում է երկրագնդի բոլոր ժողովուրդների արմատական շահերին։ Խաղաղությունը պահպանելու ժողովուրդների կամքը, նոր համաշխարհային պատերազմը կանխելու, միջազգային ասպարեզում դրական պրոցեսները զարգացնելու և խորացնելու համար նրանց պայքարը կարևոր գործոն է, որը վերջին հաշվով կանխորոշում է լարվածության թուլացման կենսական լինելը։ Խաղաղասեր ուժերը և առաջին հերթին սոցիալիստական համագործակցության երկրները գիտակցում են, որ ընդդեմ լարվածության թուլացման ռեակցիոն իմպերիալիստական շրջանների պայքարը ժամանակակից իմպերիալիստական ստրատեգիայի բաղկացուցիչ մասն է։

Արդի պայմաններում սպառազինությունների մրցավազքը դադարեցնելու և իրոք զինաթափման անցնելու պրոբլեմը առաջնահերթ է միջազգային հարաբերություններում և համաշխարհային քաղաքականությունում։ Դա օրինաչափ է, քանի որ իմպերիալիզմի առավել ագրեսիվ ուժերի սանձազերծած սպառազինությունների մրցավազքը հասել է աննախադեպ չափերի։ «Մարդկության

հիվ «առատ դոլարի», որի կարիքն այնպես զգում է խոր տնտեսական ճգնաժամ ապրող այսօրվա Թուրքական Հանրապետությունը։

Համաձայն ԱՄՆ-ի և Թուրքիայի միջև համատեղ պաշտպանության բնագավառում համագործակցության վերաբերյալ հինգ տարով կնքված համաձայնագրի, որը հունվարի սկզբին ստորագրել են երկու երկրների ներկայացուցիչները, ԱՄՆ-ի ռազմատնտեսական օգնությունը Թուրքիային 1980 թվականին կկազմի 450 մլն դոլար։ Ըստ այդ համաձայնագրի մշտական ստատուսի իրավունք են ստանում Թուրքիայի տերիտորիայում տեղակայված շուրջ 30 ամերիկյան օբյեկտ ու բազա։ Դրանք էլեկտրոնային հետախուզության նորագույն ապարատների կոմպլեքս են, միջուկային զինամթերքի պահեստներ ու գլխավորապես Սովետական Միության դեմ ուղղված միջոցներ, ինչպես նաև կապի զանազան տեսակներ (այդ թվում՝ Միջերկրական ծովում լողացող ԱՄՆ-ի 6-րդ նավատորմի ռազմանավեր), կենտրոններ։

Անկարայում կայացած ռազմական գործարքը ցնծություն առաջացրեց դեպի ԱՄՆ-ը և Արևմուտք կողմնորոշվող աջ ուժերի ճամբարում։ Այդ շրջանների շահերն արտահայտող մասսայական ինֆորմացիայի միջոցները, սրանց միացած նաև մասնական հրատարակումները, ողջունեցին սպառազինությունների մրցավազքի և Թուրքիան ՆԱՏՕ-ի ռազմամոլների ագրեսիվ ձգտումների հունը ներքաշելու քաղաքականությունը։

Թուրքիայի կոմկուսը պայքարում է միլիտարիստական կլիկի և Դեմիրելի կառավարության այն նկրտումների դեմ, որոնց նպատակն է երկիրը վերածել իմպերիալիզմի ագրեսիվ պլանների իրականացման գործիքի, վերացնել դեմոկրատական ազատությունները և վատթարացնել ժողովրդի կենսապայմանները։ Բացահայտ ռազմական դիկտատուրային խանգարելու համար Թուրքիայի կոմկուսը քուրդ-դեմոկրատներին, բնակչության կրոնական խավերին, ժողովրդահանրապետական կուսակցության անդամներին և բոլոր հայրենասիրաբար տրամադրված զինվորականներին՝ սպաներին ու սերժանտներին, գործողությունների միասնության կոչ է անում։

Անցած ամիսների իրադարձությունները ցույց են տալիս, որ համաշխարհային հասարակայնությունը և, ամենից առաջ, նրա դեմոկրատական ուժերը լի են վճռականությամբ անելու ամեն հնարավոր բան, որպեսզի միլիտարիզմի, ագրեսիայի, հեգեմոնիզմի քաղաքականություն վարող շրջաններին ստիպեն հրաժարվել լարվածությունն ուժեղացնելու, ռազմական առճակատումը սրելու, ազատության ու ինքնուրույն զարգացման համար ժողովուրդների պայքարը ճնշելու պլաններից։

Մեկնաբանելով Լ. Ի. Բրեժնևի փետրվարյան ճառն ընտրողների առջև, Լոնդոնի «Օբսերվեր» թերթը գրել է. Սովետական Միությունը ցուցադրեց կայունություն և հավատարմություն իր վարած արտաքին քաղաքականության սկզբունքներին։ Իր ելույթում Լ. Ի. Բրեժնևը շեշտեց, որ ինչպիսին էլ լինեն ամերիկյան ադմինիստրացիայի հետագա քայլերը, ՍՍՀՄ-ը հավատարիմ է մնում խաղաղության ծրագրին։

«Լ. Ի. Բրեժնևի ճառն ընտրողների առջև,— նշում է «Յումանիտեն»,— հաստատեց, որ Սովետական Միության գործողությունները համապատասխանում են միջազգային իրավունքին և ոչ մի ընդհանուր բան չունեն արևմտյան պրոպագանդայի՝ նրան վերագրած էքսպանսիոնիստական ձգտումների հետ»։

Քարտերի այսօրվա քաղաքականությունն Արևմուտքում բնութագրում են որպես լրիվ խզում լարվածության թուլացման սկզբունքներից։ «Այդ խզումը,— գրում է Արևմտյան Գերմանիայի «Բլետեր ֆյուր Դոյչե ունդ ինտերնացիոնալե պոլիտիկ» արտաքին-քաղաքական ամսագիրը,— որը պլանաչափորեն պատրաստվում էր առնվազն 1978 թվականից և որի համար մշտապես որոնում էին «մարդու իրավունքների խախտման» կամ «Կուբայում սովետական ռազմական բրիգադի ներկայության» նման պատրվակներ, Վաշինգտոնը հույս ունի այժմ «արդարացնել» աֆղանական իրադարձություններով, թեպետև ողջ աշխարհի և ամենից առաջ ԳՖՀ-ի համար ամերիկյան նման քաղաքականության վտանգավոր հետևանքներն ակնբախ են»։



Միջազգային իրադրությունը դիտավորյալ սրելով, իմպերիալիզմը ցուցաբերում է իր վախը սոցիալիզմի դիրքերի ամրապնդման, ազգային-ազատագրական շարժման վերելքի, լարվածության թուլացման ու խաղաղության օգտին հանդես եկող ուժերի ամրապնդման հանդեպ։ Վաշինգտոնը վերստին, ինչպես տասնամյակներ առաջ, փորձում է մեր երկրի հետ խոսել «սառը պատերազմի» լեզվով։ Բայց դա բացահայտ անհուսալի մտադրություն է։ Ոչ ոքի անցյալում չի հաջողվել, առավել ևս չի հաջողվի այժմ ահաբեկել Սովետական Միությանը։ Նա ունի պատշաճ զսպվածություն և հուսալի պաշտպանական հզորություն։ Մեր մեծ հայրենիքի ուժերն ու հնարավորությունները հսկայական են։ Սովետական պետությունը և նրա դաշնակիցները միշտ կարող են հակահարված տալ ամեն մի թշնամական ոտնձգության։ Եվ ոչ ոքի չի հաջողվի մեզ պրովոկացիայի ենթարկել։ Ռազմական հիստերիայի և սպառազինության տենդագին մրցավազքի «դոկտրինային» մեր երկիրը հակադրում է աշխարհի խաղաղության և անվտանգության համար հետևողական պայքարի դոկտրինան։ Մենք հավատարիմ ենք մեր կուսակցության XXIV և XXV համագումարների առաջադրած խաղաղության ծրագրին։ Ուստի այժմ, ութսունական թվականներին, ինչպես անցյալում, յոթանասունական թվականներին, մեր հայրենիքը հանդես է գալիս հանուն լարվածության թուլացման պրոցեսի ամրապնդման, հանուն սպառազինությունների մրցավազքի կրճատման, և ոչ թե դրանց ուռճացման, հանուն ժողովուրդների մերձեցման ու փոխըմբռնման, և ոչ թե նրանց արհեստական օտարացման ու թշնամանքի։

Սովետական Միությունը բարձր է պահում լենինյան արտաքին քաղաքականության դրոշը՝ խաղաղության, ժողովուրդների ազատության ու անկախության դրոշը, սոցիալական առաջընթացի դրոշը։

# ԱԶԳԵՐԻ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՈՒ ՄԵՐՁԵՑՄԱՆ ՏԵՍԱԿԱՆ ՊՐՈԲԼԵՄՆԵՐԸ

**Պ. Ն. ՖԵԴՈՍԵԵՎ**
Ակադեմիկ

*ՄԵՐ ԵՐԿՐՈՒՄ ԱԶԳԱՅԻՆ ՀԱՐՑԻ իրոք սոցիալիստական լուծումը՝ ազգերի անհավասարության բոլոր ձևերի վերացումը, ժողովուրդների բարեկամության ու եղբայրական համագործակցության հաստատումը, համաշխարհային պատմական նշանակություն ունի։ Այս հարցի մասշտաբների և կարևորության մասին է խոսում թեկուզ և այն փաստը, որ ներկայումս աշխարհում կա շուրջ 160 պետություն, այն դեպքում, երբ ազգերի, ազգությունների և էթնիկական խմբերի թիվն անցնում է երկու հազարից։ Որոշ լեզվաբաններ ենթադրում են, որ երկրաբնակները բացատրվում են ավելի քան յոթ հազար տարբեր լեզուներով։ Այս դեպքում, հավանաբար, հաշվի են առնվում բարբառներն ու խոսվածքները։ Բայց, համենայն դեպս, միանգամայն ակնհայտ է, որ ազգերի, ազգությունների և էթնիկական խմբերի մեծ մասը, կարելի է ասել՝ ճնշող մեծամասնությունն ապրում է բազմազգ պետություններում։ Այսպիսով, այդ պատճառով իսկ ազգային հարցը չափազանց կարևոր տեղ է գրավում հասարակական կյանքում։*

*Մենք լիովին հիմք ունենք հպարտանալու, որ ՍՍՀՄ-ում ազգային հարաբերությունները բնորոշվում են մի կողմից յուրաքանչյուր ազգի համակողմանի բարգավաճմամբ, մյուս կողմից՝ նրանց օրինաչափ մերձեցմամբ ու համագործակցությամբ, մարդկանց պատմական նոր հանրության՝ սովետական ժողովրդի ձևավորմամբ։ ՍՄԿԿ լենինյան ազգային քաղաքականության շնորհիվ սոցիալիստական բոլոր ազգերը վիթխարի հաջողությունների են հասել տնտեսական, սոցիալական ու հոգևոր զարգացման, այդ թվում՝ ազգային կուլտուրայի ու լեզուների բնագավառում։ Դրա հետ մեկտեղ, սոցիալիստական ազգերի և ազգությունների եղբայրական համագործակցությունը, նրանց ընդհանուր ջանքերը մեր երկրի միասնական ժողովրդատնտեսական կոմպլեքսի զարգացման և գիտատեխնիկական պոտենցիալի ուժեղացման գործում, սովետական կուլտուրայի գանձարանում նրանց ներդրման աճը ապահովում են միասնական բազմազգ պետության՝ Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության, հզորության անընդհատ վերելքը։ Եվ մեր հասարակության զարգացման արդի փուլում սոցիալիստական ազգային քաղաքականության խնդիրն ամենից առաջ այն է, որ ներդաշնակորեն զուգակցվեն ինտերնացիոնալ և ազգային շահերը, զարգացվեն և ամրապնդվեն նրանց կապերի նոր, բուն կյանքի առաջադրած ձևերը։*

*Ազգային հարցի լուծման գործում մեր երկրի պատմական հաջողությունները, հիրավի, կարելի է դասել ՍՍՀՄ-ում նոր հասարակության կառուցման բնագավառում ձեռք բերված այնպիսի հաղթանակների շարքում, ինչպիսիք են ինդուստրացումը, կոլեկտիվացումը, կուլտուրական հեղափոխությունը։ Ընդսմին հարկ է նշել, որ ազգային հարցի լուծումը հնարավոր եղավ միայն արտադրամիջոցների մասնավոր սեփականության և շահագործողական դասակարգերի վերացման, բանվոր դասակարգի, գյուղացիության և ժողովրդական մտավորականության դաշինքի հիման վրա հասարակության միասնականության հաստատման շնորհիվ։*



*Երկրի սոցիալիստական վերափոխման և ազգային հարցի լուծման, հասարակության սոցիալ-քաղաքական միասնության հաստատման և բոլոր ազգերի լիակատար հավասարության գործում առաջատար դերը պատկանում է բանվոր դասակարգին։ Աշխատավորության գաղափարական ոգեշնչողն ու քաղաքական ղեկավարը հանդիսացավ բանվոր դասակարգի մարքս-լենինյան կուսակցությունը՝ Սովետական Միության կոմունիստական կուսակցությունը, որը բոլոր սովետական մարդկանց համախմբել է պրոլետարական ինտերնացիոնալիզմի դրոշի ներքո։ ՍՄԿԿ ղեկավարությամբ, ռուս ժողովրդի անշահախնդիր և համակողմանի օգնությամբ մեր երկրի՝ նախկինում հարստահարված բոլոր ազգերն ու ազգությունները հաղթահարեցին երբեմնի հետամնացությունը և հասան արդի քաղաքակրթության բարձունքներին։*

*Միասնական բազմազգ պետության՝ Սովետական Միության, ստեղծումը մեծապես արագացրեց երկրի ժողովրդական տնտեսության զարգացումը և ազգային հանրապետությունների ու մարզերի տնտեսական զարգացման մակարդակների համահավասարեցումը։ «ՍՍՀ Միության մեջ սովետական հանրապետությունների միավորումը,— ասված է մեր հիմնական օրենքում,— բազմապատկեց երկրի ժողովուրդների ուժերն ու հնարավորությունները սոցիալիզմի կառուցման գործում»։*

*Հասարակական կյանքի բոլոր բնագավառներում ՍՍՀՄ ժողովուրդների եղբայրական բարեկամությունն ու փոխօգնությունը, համագործակցությունը դիմացան ժամանակի փորձություններին, կոփվեցին և ամրապնդվեցին սովետական իշխանության համար մղված պայքարում, առաջին հնգամյակների ստեղծագործ աշխատանքներում, Հայրենական մեծ պատերազմի ահեղ իրադրության մեջ, պատերազմի հետևանքով քայքայված տնտեսության վերականգնման դժվարին տարիներին։ Եվ այսօր մեր իրականությունը կոմունիզմի կառուցման գործում ցուցադրում է մեր հայրենիքի ժողովուրդների բարեկամության ու համագործակցության բազում վառ օրինակներ։*

*ՍՄԿԿ ազգային քաղաքականությունը զարգացած սոցիալիզմի պայմաններում խարսխվում է տեսական ամուր հիմքի վրա, որի սկիզբը իր աշխատություններով դրել է Վ. Ի. Լենինը։ Նա հստակորեն տեսնում էր սոցիալիզմի օրոք ազգերի մերձեցման հեռանկարը, խոսում նրանց միաձուլման մասին, ամենից առաջ նկատի ունենալով նրանց ինքնակամ միավորումը միասնական բազմազգ սոցիալիստական պետության մեջ։ Ազգերի ինքնակամ միավորումն ու մերձեցումը Լենինը հակադրում էր անեքսիային, հարկադրական ասիմիլյացիային, իմպերիալիստական պետությունների կողմից ազգերի բռնի միացմանը։ «Սոցիալիզմի նպատակն է,— գրել է նա,— ո՛չ միայն ոչնչացնել մարդկության տրոհվածությունը մանր պետությունների և ազգերի ամեն մի առանձնացվածությունը, ո՛չ միայն մերձեցնել ազգերին, այլև միաձուլել նրանց» (*Երկեր, *հ. 22, էջ 188)։*

*Ընդ որում, Լենինը նշում էր, որ ազգերի կամավոր, դեմոկրատական մերձեցման ու ձուլման անհրաժեշտ նախապայման են բոլոր կեղեքված ազգերի լիակատար ազատագրումը, նրանց ինքնորոշման իրավունքը։*

*Ազգային հարցում հիմնավորելով կուսակցության ծրագրային դրույթը, Լենինը գրել է. «Պրոլետարական կուսակցությունը ձգտում է ստեղծել որքան կարելի է ավելի խոշոր պետություն, քանի որ այդ ձեռնտու է աշխատավորներին. Նա ձգտում է ազգերի* մերձեցման և հետագա միաձուլման, *բայց այդ նպատակին նա կամենում է հասնել ոչ թե բռնությամբ, այլ բացառապես բոլոր ազգերի բանվորների և աշխատավոր մասսաների ազատ, եղբայրական միությամբ» (*Երկեր, *հ. 24, էջ 70)։*

*Ազգային-պետական շինարարության հարցերի վերաբերյալ Լենինի ասույթները վկայում են նաև, որ սոցիալիզմի պայմաններում ազգերի կամավոր միաձուլում ասելով նա հասկանում էր ոչ թե ազգային տարբերությունների վերա-*

ցում, այլ սոցիալիստական ազգերի ավելի սերտ միասնություն, եղբայրական դաշինք։ Ազգային տարբերությունները, նշում էր Լենինը, «պրոլետարիատի դիկտատուրան նույնիսկ համաշխարհային մասշտաբով իրագործվելուց հետո էլ կպահպանվեն շատ ու շատ երկար ժամանակ» (Երկեր, հ. 31, էջ 97)։

Սրան համապատասխան, ՍՄԿԿ ծրագրում նշվում է, որ ՍՍՀՄ-ում կոմունիզմի հաղթանակի հետ միասին տեղի կունենա ազգերի է՛լ ավելի մերձեցում, կաճի նրանց տնտեսական ու գաղափարական ընդհանրությունը, կզարգանան նրանց հոգևոր կերպարի կոմունիստական ընդհանուր գծերը։ «Սակայն ազգային տարբերությունների, հատկապես լեզվական տարբերությունների վերացումը, զգալիորեն ավելի տևական պրոցես է, քան դասակարգային սահմանագծերի վերացումը»։

Ազգային հարցի լենինյան տեսությունը և ազգային քաղաքականությունը հետագայում խորապես մշակվեցին ու կոնկրետացան ՍՄԿԿ համագումարների և մեր կուսակցության Կենտկոմի պլենումների որոշումներում, սովետական պետության օրենսդրական ակտերում, ընկեր Լ. Ի. Բրեժնևի՝ ամենից առաջ պատմական նշանավոր տարեթվերի՝ մեծ Հոկտեմբերի հաղթանակի և Սովետական Միության կազմավորման տոնակատարության, ՍՍՀՄ սահմանադրության նախապատրաստման և ընդունման հետ կապված ելույթներում։ Լենինյան ազգային քաղաքականությանը համապատասխան մշակվել ու կենսագործվել են էկոնոմիկայի զարգացման և երկրի մասշտաբով արտադրաուժերի տեղաբաշխման սկզբունքները, ինչպես նաև միջոցառումներ՝ ազգային-պետական շինարարության կատարելագործման նպատակով։ Համակողմանիորեն հիմնավորվել է մարդկանց պատմական նոր հանրության՝ սովետական ժողովրդի, առաջացման վերաբերյալ հիմնարար կարևորություն ունեցող եզրակացությունը։ Տեսականորեն ընդհանրացվել է ազգային կուլտուրաների զարգացման և միասնական սովետական կուլտուրայի ձևավորման փորձը։ Զարգացվել են սոցիալիստական հայրենասիրության և ինտերնացիոնալիզմի լենինյան գաղափարները։

Ազգային հարաբերությունների կարևորագույն տեսական պրոբլեմները, ՍՍՀՄ-ում ազգային հարցի լուծման պատմական փորձը, սոցիալիզմի պայմաններում ազգերի զարգացման ու մերձեցման պրոցեսները դարձել են սովետական գիտնականների, այդ թվում և միութենական հանրապետություններում, սևեռուն ուշադրության առարկան։ Վերջին տարիներս զգալիորեն աճել է հասարակագետ գիտնականների հետաքրքրությունն այդ պրոբլեմների նկատմամբ։ Մոսկվայում, միութենական հանրապետությունների մայրաքաղաքներում՝ Տաշքենդում, Ալմա-Աթայում, Բաքվում, Դուշամբեում, Երևանում, Թբիլիսիում, Կիևում, Տալլինում և այլուր Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության կազմավորման 50-ամյակի, մեծ Հոկտեմբերի 60-ամյակի կապակցությամբ անցկացվեցին գիտատեսական կոնֆերանսներ, որտեղ լուսաբանվեցին հասուն սոցիալիստական հասարակարգի պայմաններում ազգային հարաբերությունների կատարելագործման բազմաթիվ կարևոր կողմերը։

Անցկացված հետազոտությունների, ինչպես նաև կոնֆերանսների նյութերի հիման վրա հրատարակվեցին հիմնարար կոլեկտիվ աշխատություններ։ Հիշատակենք, մասնավորապես այնպիսի խոշոր աշխատությունները, ինչպիսիք են «Լենինիզմը և ազգային հարցը արդի պայմաններում» (Մ., Պոլիտիզդատ, 1974), «Արդի փուլում ազգային հարաբերությունները ՍՍՀՄ-ում» (Մ., «Նաուկա», 1979), «Պրոլետարական ինտերնացիոնալիզմի լենինյան գաղափարների հաղթանակը» (Մ., «Նաուկա», 1974), «ՍՄԿԿ պատմական փորձը հանուն ժողովուրդների միջև խաղաղության ու բարեկամության ամրապնդման պայքարում» (Մ., Պոլիտիզդատ, 1977), «Անդրկովկասի կոմունիստական կազմակերպությունների գործունեությունը աշխատավորության ինտերնացիոնալ դաստիարակության նպատակով» (Թբիլիսի, «Սաբճոթա Սաքարթվելո», 1977), «Ինտերնացիոնալն ու ազգայինը սոցիալիստական հասարակությունում», (Կիև, «Նաուկովա Դումկա», 1976), «Բելոռուսիան Սովետական Հանրապետությունների Միության մեջ» (Մինսկ, «Նաուկա ի տեխնիկա», 1972), «Ժողովուրդների եղբայրական բարեկամությունը Հոկտեմբերի մեծ նվաճումն է» (Աշխաբադ, «Թուրքմենիստան», 1977), «Մեծ Հոկտեմբերը և ազգային հարցը» (Երևան, ԳԱ հրատ., 1977), «Սովետական ժողովուրդը և ազգային զարգացման դիալեկտիկան» (Բաքու, «Էլմ», 1972), «ՍՄԿԿ ազգային քաղաքականության հարցերը զարգացած սոցիալիզմի պայմաններում» (Քիշնև, «Կարտյա Մոլդովենյասկե», 1977), «Սովետական



ժողովուրդը կոմունիզմի կառուցողն է» (Ֆրունզե, «Կըրգըզստան», 1977), «Ազգամիջյան կապերը և ՍՍՀՄ ժողովուրդների կուլտուրաների փոխներգործությունը» (Տալլին, «Էէստի Ռաամատ», 1978) և այլն։

Կարելի է գոհունակությամբ նշել, որ տվյալ պրոբլեմատիկայի գիտական մշակումը կատարում են հասարակագետ հետազոտողների բոլոր ջոկատները (պատմաբանները, տնտեսագետները, սոցիոլոգները, փիլիսոփաները, իրավաբանները, ազգագրագետները, բանասերները, հոգեբանները)։ Վերջին ժամանակներս, որ հատկապես կարևոր է, նկատելիորեն արագացել է այդ ոլորտում հետազոտությունների սեղծագործական ինտեգրացման պրոցեսը։ Դրա արդյունքը եղավ գիտության տարբեր ճյուղերի մասնագետների ընդհանուր ջանքերով հանգուցային թեմաների կոմպլեքս մշակումների լայն զարգացումը, որը հնարավորություն ընձեռեց ավելի խոր ուսումնասիրել դասակարգայինի և էթնիկականի, ազգայինի և ինտերնացիոնալիստականի հարաբերակցությունը, լիովին ցույց տալ մեր երկրի ժողովուրդների կյանքի տարբեր կողմերի փոխներգործության դիալեկտիկան։

Բայց մենք չենք կարող բավարարվել ձեռք բերածով։ ՍՄԿԿ Կենտկոմը և անձամբ ընկեր Լ. Ի. Բրեժնևը ուշադրություն են սևեռում այն բանին, որ հարկավոր է մշտապես տեսադաշտում պահել ազգային հարաբերությունների բնագավառում կատարվող բոլոր պրոցեսները, խորապես ուսումնասիրել դրանք, ժամանակին անհրաժեշտ գործնական եզրակացություններ անել, կատարելագործել ժողովուրդների եղբայրական համագործակցության տնտեսական ու քաղաքական ձևերը, պայմաններ ստեղծել սոցիալիստական ազգերի հետագա զարգացման ու մերձեցման համար։

Ազգային հարաբերությունների գիտական հետազոտությունների ելակետային հիմքը այժմ, հավանաբար, պետք է լինի սովետական ժողովրդի ծագման հետ կապված պրոբլեմների համակողմանի ուսումնասիրումը։ Սովետական ժողովուրդը մարդկանց՝ պատմականորեն առաջացած սոցիալական ու ինտերնացիոնալ նոր հանրություն է։ Դրա հիմքն են բանվոր դասակարգի, գյուղացիության և մտավորականության անխախտ դաշինքը՝ բանվոր դասակարգի առաջատար դերով հանդերձ, մեր երկրի բոլոր ազգերի ու ազգությունների իրավական ու փաստական հավասարությունը, եղբայրական բարեկամությունն ու համագործակցությունը։

Առանձին աշխատություններում այս հարցերը պարզաբանելիս տեղ են գտել անհստակություններ և թյուր մեկնաբանություններ, որոնք, իհարկե, պետք է ուղղել։ Մի կողմից, որոշ չափով տարածվել են այն դատողությունները, թե, իբր, սովետական ժողովուրդը ինչ-որ նոր, միասնական ազգ է, իսկ ազգերի միավորումը, նշանակում է, իբր, ազգային տարբերությունների վերացում։ Ըստ այդ ըմբռնման կարելի է եզրակացնել, որ պատմական նոր հանրության՝ սովետական ժողովրդի գոյացումը կհանգեցնի սոցիալիստական ժամանակակից ազգերի կլանմանն ու դրանց անհետացմանը։ Իսկ իրականում պատմական նոր հանրությունը չի վերացնում գոյություն ունեցող ազգերին և ժողովուրդներից վեր ինչ-որ վերնաշենքեր չի կառուցում, այլ, ընդհակառակը, ծառայում է որպես տարբեր ազգության մարդկանց միավորման օրինակ՝ պահպանելով բուն ազգերին և ազգություններին, նրանց ինքնատիպությունը, լեզուն և կուլտուրան։ Դեռ ավելին, սովետական ժողովուրդը, իբրև պատմական նոր հանրություն, հանդես է գալիս որպես յուրաքանչյուր ազգի և ազգության նյութական ու հոգևոր ուժերի զարգացման ու ծաղկման օրգանական և արդյունավետ ձև։

ՍՍՀՄ սահմանադրության նախագծի մասին զեկուցման մեջ ընկեր Լ. Ի. Բրեժնևը վճռականորեն մերժեց «միասնական սովետական ազգի» հասկացությունը։ «Սովետական ժողովրդի սոցիալ-քաղաքական միասնությունը,— շեշտեց նա,— ամենևին չի նշանակում ազգային տարբերությունների անհետացում»։ Կոմունիստական շինարարության հաջողությունների հիման վրա անշեղորեն մերձենում, փոխադարձաբար հարստանում է ազգերի հոգևոր կյանքը։ Բայց չի կարելի թույլ տալ այդ օբյեկտիվ պրոցեսի արհեստական արագացում։

Ազգերի համահարթող ձուլման և անհետացման վաղահաս տեսությունների յուրօրինակ հակազդում կարելի է համարել տեղ-տեղ նկատվող միտումները, որոնք կարող են հանգեցնել

ազգային-կուլտուրական մեկուսացման և հասարակական կյանքի ու նրա տարբեր կողմերի ինտերնացիոնալացման պրոցեսների կասեցման։

Հասկանալի է, որ այս երկու ծայրահեղությունն էլ որոշակի վտանգ են ներկայացնում, եթե դրանց չհակադրենք զարգացած սոցիալիզմի պայմաններում ազգային հարաբերությունների պրոբլեմների մարքս-լենինյան ըմբռնման ակտիվ մշակումը և պրոպագանդումը։

Այս բնագավառում հետազոտական գործունեության գլխավոր ուղղությունը կարելի է ձևակերպել այսպես. որո՞նք են ազգերի և ազգությունների հետագա զարգացման հեռանկարները հասարակական կյանքի բոլոր կողմերի հարաճուն ինտերնացիոնալացման պայմաններում, որո՞նք են ժողովուրդների բարեկամության և համագործակցության ամրապնդման ուղիներն ու միջոցները սոցիալիզմը աստիճանաբար կոմունիզմի վերաճելու պրոցեսում։

Ազգային հարաբերությունների բնագավառում կուսակցական ծրագիրն ու քաղաքականությունն է՝ այսուհետ ևս ձգտել ազգերի և ազգությունների լիակատար միասնության, բայց ոչ թե նրանց սոցիալ-կուլտուրական ինքնատիպության անտեսման ու վերացման ճանապարհով, այլ աստիճանական մերձեցմամբ, նրանցից յուրաքանչյուրի համար զարգացման առավելագույն բարենպաստ պայմաններ ստեղծելով։

Այդպիսին է զարգացած սոցիալիզմի փուլում կոմունիզմ կառուցող հասարակության ազգային հարաբերությունների դիալեկտիկան։ Մարքս-լենինյան գիտության ելակետն այն է, որ կոմունիստական հասարակարգում չեն լինի դասակարգեր և մեկուսացված սոցիալական խմբեր։ Կանհետանան դասակարգային տարբերությունների բոլոր տեսակի հետքերը, իսկ ազգային տարբերությունները դեռ երկար կմնան նաև կոմունիզմի օրոք։

Մենք տեսնում ենք, որ հասուն սոցիալիզմի պայմաններում արագանում է սոցիալիստական ազգերի համակողմանի զարգացման պրոցեսը։ Ազգային զարգացման նախադրյալներն ու միջոցներն են՝ հանրապետությունների էկոնոմիկայի ու գիտատեխնիկական պոտենցիալի անշեղ աճը Սովետական Միության տնտեսական ու գիտատեխնիկական ընդհանուր կոմպլեքսում, ազգային սոցիալիստական պետականության ու կուլտուրայի, ինչպես նաև մայրենի լեզվի զարգացումը։ Միաժամանակ, զարգացած սոցիալիստական հասարակությունում ուժգնանում են ինտերնացիոնալացման, այսինքն՝ սովետական բոլոր ժողովուրդների հետևողական մերձեցման ու համակողմանի համագործակցության, նրանց եղբայրական անխախտ բարեկամության ամրապնդման պրոցեսները։ Սոցիալիզմի միասնական նյութատեխնիկական բազան, միասնական ընդհանուր միութենական պետությունը, բովանդակությամբ սոցիալիստական, ձևով ազգային, էությամբ ինտերնացիոնալիստական սովետական կուլտուրան, ազգամիջյան հաղորդակցության լեզվի լայն տարածումը՝ այս բոլոր գործոնները հանգեցնում են ինտերնացիոնալացման արագացմանը։

Ազգերի զարգացումը և մերձեցումը ոչ թե մեկուսացված և զուգահեռաբար ընթացող, այլ սոցիալիստական հասարակության միասնական ինտերնացիոնալիստական էությունն արտահայտող փոխկապակցված պրոցեսներ են։ Ինչպես ազգային զարգացման, այնպես էլ ազգերի մերձեցման պայմաններն ու միջոցներն ստեղծվում են լոկ միաժամանակ, օրգանական փոխներգործությամբ։ Ուստի շատ կարևոր է, որ ազգերի բոլոր կարողությունների ծավալման հետ մեկտեղ լավագույն զուգակցմամբ ընթանան ինտերնացիոնալացման պրոցեսները։ Իսկ դա պահանջում է խորապես ուսումնասիրել ազգերի հետագա զարգացման և նրանց հետևողական մերձեցման տնտեսական, սոցիալ-քաղաքական և կուլտուր-կենցաղային պայմանները։

Պետք է խոստովանել, որ ազգային հանրապետությունների և մարզերի տնտեսական կյանքի շատ ասպեկտներ դեռևս բավականաչափ լուսաբանված և տեսականորեն իմաստավորված չեն։ Անհրաժեշտ է խորապես վերլուծել սովետական ժողովրդի՝ որպես պատմական նոր հանրության, ձևավորումը, մասնավորապես մեր հասարակության հիմնական սոցիալական խմբերի միջև եղած տարբերությունների աստիճանական վերացման և այդ հասարակության լիակատար միատարրության հաստատման պայմանները։ Բայց առանձնապես շատ է եռ մնում ազգային և ինտերնացիոնալ զարգացման սոցիալ-հոգեբանական, բարոյակենցաղային ասպեկտների հետազոտությունը։

Կոմունիզմի նյութատեխնիկական բազայի կառուցումը ենթադրում է ամրապնդել ընդհանուր պետական ժողովրդատնտեսական միասնական կոմպլեքսը, որը մեր բոլոր ազգերի և ազգությունների բարեկամության ու համագործակցության հետագա ամրապնդման կարևոր գործոն է։ Հասուն սոցիալիզմի փուլում արդեն հիմնականում լուծվել է սովետական հանրապետությունների տնտեսական զարգացման մակարդակների համահավասարեցման խնդիրը. դրանցից յուրաքանչյուրն այժմ էական ավանդ է մուծում ընդհանուր միութենական էկոնոմիկայում։ Մեր հետազոտողները պետք է համակողմանիորեն բացահայտեն, թե ինչ դեր է խաղացել արտադրաուժերի ռացիոնալ տեղաբաշխումը, ամբողջությամբ վերցրած սոցիալիստական պետության պահանջմունքները և նախկին ազգային ծայրամասերի վերելքի խնդիրները հաշվի առնող համահավասարեցումը։ Լայն ճակատով գիտականորեն հետազոտելով բնական հարստությունները, սոցիալիստական պետությունը ինդուստրիալ համալիրների ինտենսիվ շինարարություն ծավալեց Միջին Ասիայի, Ղազախստանի և Անդրկովկասի, Սիբիրի ու Հեռավոր արևելքի, Պովոլժիեի և Ուրալի շրջաններում, որպեսզի հաղթահարի այդ ռեգիոնների հետամնացությունը, որոնց բնակչության զգալի մասը նախկինում կեղեքված ազգեր էին։

Այս պրոբլեմի ուսումնասիրման գործում նկատելի բոլոր տեղաշարժերով, այդ թվում և միութենական հանրապետություններում կատարվածով հանդերձ, դեռևս շատ բան պետք է անել։ Մասնավորապես անբավարար են ուսումնասիրված միջհանրապետական և միջմարզային տնտեսական կոոպերացման և ինտեգրացման հարցերը, հատկապես ժողովրդատնտեսական խոշոր համալիրների կառավարման ոլորտը։ Այդ նույնը կարելի է ասել հանրապետությունների սոցիալ-տնտեսական ու կուլտուրական զարգացման մակարդակների որոշման և համադրության ցուցանիշների ու մեթոդների սիստեմի մշակման մասին։ Խիստ կարևոր է այսօր հետազոտել և ճշտորեն գնահատել այդ մակարդակների համահավասարեցման պրոցեսները։ Երբեմն գործի էությունը հանգեցվում է այս կամ այն առանձին ցուցանիշների հավասարեցմանը։ Բայց չի կարելի հաշվի չառնել, որ առհասարակ բոլոր ցուցանիշներով բացարձակ հավասարություն լինել չի կարող։ Չէ՞ որ տարբեր են ժողովուրդների կյանքի պայմանները, տնտեսական զարգացման բնույթը, որոնք պայմանավորված են կլիմայական առանձնահատկություններով և բնական պաշարներով, կապված են արդյունաբերական ու կուլտուրական կենտրոններից հեռու գտնվելու հետ և այլն։ Բայց սա չի բացառում, այլ ենթադրում է յուրաքանչյուր հանրապետության էկոնոմիկայի կոմպլեքս զարգացումը. դրա տնտեսության բոլոր ճյուղերը ընդհանուր միութենական ժողովրդատնտեսական կոմպլեքսի բաղկացուցիչ մասն են։

Այս կապակցությամբ ծառանում է այս կամ այն հանրապետության, այս կամ այն ժողովրդի սեփական աղբյուրների զարգացման և ողջ երկրի ու եղբայրական մյուս ժողովուրդների հասույթներով ապահովվող աղբյուրների հարաբերակցության հարցը։ Միայն ողջ երկրի բնական պաշարների համատեղ պլանաչափ օգտագործմամբ, հաշվի առնելով ողջ Սովետական Միության և նրա մեջ մտնող ազգային հանրապետությունների ու մարզերի պահանջմունքները, հնարավոր կլինի հաջողությամբ լուծել սովետական հասարակության, բոլոր ազգերի և ազգությունների վերընթաց զարգացման խնդիրները։ Ազգամիջյան միասնության և սոցիալիստական ազգերի մերձեցման տնտեսական հիմունքների ուսումնասիրումը սովետական հասարակագիտության հրատապ խնդիրներից է։

Որակապես նոր երևույթ կարելի է համարել սովետական հանրապետությունների սոցիալական կառուցվածքի համահավասարեցումը և առանձնապես բանվոր դասակարգի արագ աճն այն հանրապետություններում, որտեղ անցյալում բանվորների տեսակարար կշիռը բնակչության մեջ շատ ավելի փոքր էր, քան երկրի կենտրոնական շրջաններում։ Եթե ամբողջ Սովետական Միությունում բանվորների թիվը 1924-ից մինչև 1978 թվականները աճել է 13,7 անգամ, ապա Ուզբեկական ՍՍՀ-ում՝ 33,4, Ղազախական ՍՍՀ-ում՝ 35,1, Կիրգիզական ՍՍՀ-ում՝ 43,1, Տաջիկա-

բելի հաշվի չառնել նացիոնալիստական նախապաշարումների և կանխակալությունների բոլոր դրսևորումների դեմ մղվող պայքարի հրատապությունը։ Ազգերի և ազգությունների հոգևոր կյանքով պետք է զբաղվել ո՛չ միայն ճանաչողական նպատակով, այլև ինտերնացիոնալ հիման վրա հասարակական գիտակցության բոլոր ձևերի զարգացումն ապահովելու, բացասական միտումների զարգացման հնարավորությունը կանխելու համար։

Սովետական կուլտուրան ոչ թե ապազգային, ոչ թե միալեզու, այլ բազմազգ, բազմալեզու կուլտուրա է, այն ապրում և տարածվում է ՍՍՀՄ ժողովուրդների բոլոր լեզուներով։ Բազմալեզվությունը որոշակի դժվարություններ է ստեղծում փոխադարձ շփման համար, բայց, միաժամանակ, այն խորհրդանշում է սովետական հասարակության հոգևոր հարստությունը, հանդես գալով որպես սոցիալիստական կուլտուրայի բազմերանգ ու բազմակողմանի արտահայտման անսպառ աղբյուր։ Ազգային լեզուների զարգացումը դարձել է ՍՍՀՄ ժողովուրդների ակնառու հասումների ոչ պակաս կարևոր պայման կյանքի քաղաքական-վարչական, տնտեսական, կուլտուրական և այլ ոլորտներում։ Դրա հետ մեկտեղ, հետզհետե առավել նշանակություն է ձեռք բերում ազգամիջյան հաղորդակցման լեզվի տարածումը։ Օբյեկտիվ պատմական հանգամանքների բերումով այդպիսին է դարձել ռուսաց լեզուն։

Ազգային հարցում պայքարելով ցարական ինքնակալության գաղութատիրական քաղաքականության և բուրժուալիբերալիստական երեսպաշտության դեմ, Լենինը պաշտպանում էր լեզուների լիակատար ազատությունը, լիակատար իրավահավասարությունը։ Նա կուսակցության ծրագրային պահանջն էր համարում պարտադիր պետական լեզվի վերացումը (տե՛ս Երկեր, հ. 20, էջ 73, 358, հ. 24, էջ 370, 583, 598)։

Բուրժուական լիբերալները ռուսերենի՝ որպես պետական լեզվի, արտոնյալ վիճակի պահպանման անհրաժեշտությունը պատճառաբանում էին նրանով, որ այն «մեծ է և հզոր», այդ իսկ պատճառով էլ, իբր, Ռուսաստանի բնակիչները պետք է այն իմանան։ Առարկելով լիբերալներին, Լենինը գրել է. «Այդ ամենը ճիշտ է, պարոնայք լիբերալներ,— պատասխանում ենք մենք նրանց։ Մենք ձեզնից լավ գիտենք, որ Տուրգենևի, Տոլստոյի, Դոբրոլյուբովի, Չերնիշևսկու լեզուն մեծ ու հզոր է։ Մենք ձեզնից ավելի ենք ցանկանում, որպեսզի Ռուսաստանում բնակվող անխտիր բոլոր ազգերի հարստահարված դասակարգերի միջև ստեղծվի որքան հնարավոր է ավելի սերտ հաղորդակցություն և եղբայրական միասնություն։ Եվ մենք, հասկանալի է, կողմնակից ենք այն բանին, որպեսզի Ռուսաստանի յուրաքանչյուր բնակիչ հնարավորություն ունենա սովորելու ռուսաց մեծ լեզուն։

Մենք չենք ցանկանում միայն մի բան՝ ստիպողականության տարրը» (Երկեր, հ. 20, էջ 73)։

Լենինը հանգամանորեն պարզաբանել է, որ պետական լեզուն նշանակում է հարկադրանք, իսկ դա այլալեզու ազգերին ամենևին էլ իր կողմը չի գրավում, այլ վանում է իրենից։ Պետական լեզվի պարտադրման քաղաքականությունն անտեսում է հոգեբանությունը, որը հատկապես կարևոր է ազգային հարցում։ Ռուսերենի՝ որպես ազգամիջյան հաղորդակցման լեզվի տարածմանը հուժկու խթան է հանդիսանում էկոնոմիկան, «որը ռուսերենը անհրաժեշտ է դարձնում»։ Իսկ ամենափոքր հարկադրանքը «պղծում, ապականում, ի չիք է դարձնում... միասնական լեզվի անվիճելի պրոգրեսիվ նշանակությունը» (Երկեր, հ. 19, էջ 624)։

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը վերջ տվեց լեզվական այն իրավահավասարությանը, երբ ռուսերենը արտոնյալ, պետական լեզու էր և բռնությամբ պարտադրվում էր ոչ ռուս ազգերին։ Սովետական իշխանության հաստատումից ի վեր ռուսաց լեզուն օժտված չէ ինչ-որ արտոնությամբ, ինչ-որ հատուկ իրավաբանական ստատուսով։ Դրա ուսումնասիրումը և օգտագործումը ոչ ռուս ազգի մարդկանց կողմից կատարվում է ազատ, կամավոր որոշման հիման վրա։ Ռուսաց լեզվի տարածումը պայմանավորված է այն բանով, որ դրանից օգտվում է երկրի բնակչության մեծամասնությունը։



Ռուսաց լեզուն ծառայում է ՍՍՀՄ բոլոր ազգերի և ազգությունների տնտեսական ու քաղաքական կյանքի, գիտատեխնիկական ու կուլտուրական զարգացման ընդհանուր պահանջմունքներին։

Միութենական և ավտոնոմ հանրապետություններում, մարզերում, քաղաքներում ու գյուղերում ապրում և աշխատում են տարբեր ազգության մարդիկ։ Ազգամիջյան հաղորդակցման լեզուն նրանց համար համատեղ արտադրության, հասարակական գործունեության և ամենօրյա կենցաղի անհրաժեշտ պայման է։ Հասուն սոցիալիզմի պայմաններում հետևողականորեն պահպանվում են ազգային, այդ թվում՝ լեզվային քաղաքականության լենինյան սկզբունքները։ Լեզուների և ժողովուրդների հավասարության սկզբունքը բարձրացված է սահմանադրական դրույթի աստիճանին։ «ՍՍՀՄ քաղաքացիները,— ասված է ՍՍՀՄ սահմանադրության 34-րդ հոդվածում,— օրենքի առաջ հավասար են, անկախ ծագումից... լեզվից... և այլ հանգամանքներից»։

ՍՍՀՄ ժողովուրդների հավասար իրավունքների իրականացումն ապահովվում է բոլոր ազգերի ու ազգությունների համակողմանի զարգացմամբ ու մերձեցմամբ, ինչպես նաև «մայրենի լեզվից և ՍՍՀՄ մյուս ժողովուրդների լեզուներից օգտվելու հնարավորությամբ»։

Զարգացած սոցիալիզմի փուլում, հասարակական կյանքի բոլոր կողմերի հետագա ինտերնացիոնալացման պայմաններում ազգամիջյան հաղորդակցման լեզուն դառնում է Սովետական Միության ժողովուրդների հետագա մերձեցման և համագործակցության, ազգային կուլտուրաների և լեզուների զարգացման ու փոխհարստացման, արդի քաղաքակրթության հասումների համակողմանի յուրացման ու բազմապատկման կարևոր պայմաններից մեկը։

1979 թվականի մայիսի վերջին Տաշքենդում կայացած «Ռուսաց լեզուն ՍՍՀՄ ժողովուրդների բարեկամության ու համագործակցության լեզուն է» համամիութենական գիտատեսական կոնֆերանսը համոզիչ կերպով ցույց տվեց բոլոր ժողովուրդների կողմից իրենց մայրենի լեզուների զարգացումն ու օգտագործումը, դրանց հասարակական ֆունկցիաների հարստացումը, և, միաժամանակ, ազգամիջյան հաղորդակցման լեզվի լայն տարածումը օրգանապես զուգակցելու անհրաժեշտությունը։

Կոնֆերանսի մասնակիցներին ընկեր Լ. Ի. Բրեժնևի հղած ողջույնում տրված է ՍՄԿԿ ազգային քաղաքականության, ազգային լեզուների և ազգամիջյան հաղորդակցման լեզվի այսօրվա դերի խոր հիմնավորումը. «Զարգացած սոցիալիզմի պայմաններում, երբ մեր երկրի էկոնոմիկան վերածվել է ժողովրդատնտեսական միասնական կոմպլեքսի, առաջացել է պատմական նոր հանրություն՝ սովետական ժողովուրդը, օբյեկտիվորեն բարձրանում է ռուսերենի՝ որպես ազգամիջյան հաղորդակցման լեզվի, դերը կոմունիզմի կառուցման, նոր մարդու դաստիարակման գործում։ Մայրենի լեզվի հետ միասին ռուսաց լեզվին ազատ տիրապետելը, լեզու, որ սովետական բոլոր մարդիկ կամավոր կերպով ընդունել են որպես ընդհանուր պատմական նվաճում, նպաստում է սովետական ժողովրդի քաղաքական, տնտեսական և հոգևոր միասնության հետագա ամրապնդմանը»։

ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամության թեկնածու, Ուզբեկստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար ընկեր Շ. Ռ. Ռաշիդովի զեկուցման մեջ և հաջորդ զեկուցումներում ու ելույթներում բազմակողմանիորեն քննարկվեցին լեզվաշինության կատարելագործման և ազգային դպրոցներում մայրենի լեզվին զուգընթաց ռուսաց լեզվի դասավանդումը բարելավելու հիմնական տեսական պրոբլեմները և գործնական միջոցառումները։ Կոնֆերանսը քննարկեց և ընդունեց հանձնարարականներ, որոնցում շարադրված է մանկական հասակից սկսած կրթության բոլոր հաջորդ փուլերում ռուսաց լեզվի ուսուցման մի ամբողջական համակարգ։

Ազգամիջյան հաղորդակցման լեզվի տարածումը մեծ նշանակություն ունի գիտատեխնիկական առաջընթացի համար։ Մեր ժամանակներում գիտությունն ու տեխնիկան առավել, քան երբևէ, ստացել են ինտերնացիոնալ բնույթ։ Գիտատեխնիկական առաջընթացը ազգերի զարգացման և նրանց կյանքի համակողմանի ինտերնացիոնալացման հուժկու գործոն է։ Մեր բոլոր հան-

այն միութենական կամ ինքնավար հանրապետության նվաճումների և ամբողջ սովետական պետության ընդհանուր առաջընթացի միջև:

Հազիվ թե կարելի լինի ճիշտ համարել այն, որ հանրապետությունների զարգացման վերաբերյալ վիճակագրական ժողովածուներում երբեմն չի հիշատակվում, կամ բավարար չափով չի բացահայտվում այն վիթխարի ու հարաճուն ավանդը, որ տվյալ հանրապետության ազգային զարգացման գործում ներդնում է ամբողջ երկիրը:

Հետազոտական գործունեության կենտրոնական սկզբունքներից մեկը այն անտարակուսելի փաստի հաշվառումն է, որ յուրաքանչյուր ժողովրդի կյանքում ազգային զարգացման գործում վճռական դեր են խաղում մեր ողջ երկրի, ՍՍՀՄ ազգերի և ազգությունների ամբողջ եղբայրական ընտանիքի նվաճումները:

Պատմության դիալեկտիկան վկայում է, որ լենինյան ազգային քաղաքականության իրականացման հիման վրա սոցիալիստական ազգերի համակողմանի բարգավաճումը հանգեցնում է ոչ թե նրանց մեկուսացման, այլ միմյանց հետ հետագա մերձեցման: Մենք հպարտությամբ կարող ենք ասել, որ այսօր ո՛չ միայն ամբողջությամբ վերցրած Սովետական Միությունը, այլև այն կազմող յուրաքանչյուր միութենական հանրապետություն մարքսիզմ-լենինիզմի ընդհանուր գաղափարներով, կոմունիզմի կառուցման միասնական նպատակներով միավորված ամենատարբեր ազգությունների աշխատավորների մի համերաշխ ընտանիք է: Այդ է սոցիալիստական հասարակության ուժի կենսատու աղբյուրներից մեկը:

Տարբեր ազգության աշխատավորների պրոլետարական ինտերնացիոնալիզմի, անխախտ բարեկամության ու եղբայրական համագործակցության լենինյան սկզբունքները մարմնավորվում են համաշխարհային սոցիալիստական համագործակցության գոյությամբ: Սոցիալիստական համագործակցության երկրների միջև հաստատվել են դասակարգային շահերի ու նպատակների ընդհանրության, լիակատար իրավահավասարության, եղբայրական փոխօգնության և համակողմանի համագործակցության վրա հիմնված նոր, պատմության մեջ նախկինում չտեսնված միջազգային տնտեսական ու քաղաքական հարաբերություններ: ՍՍՀՄ-ի և սոցիալիստական երկրների փոխհարաբերությունների սկզբունքները ամրագրված են սովետական պետության հիմնական օրենքում: «ՍՍՀՄ-ը որպես սոցիալիզմի համաշխարհային սիստեմի, սոցիալիստական համագործակցության բաղկացուցիչ մաս, զարգացնում և ամրապնդում է բարեկամությունն ու համագործակցությունը, ընկերական փոխօգնությունը սոցիալիզմի երկրների հետ՝ սոցիալիստական ինտերնացիոնալիզմի սկզբունքի հիման վրա, ակտիվորեն մասնակցում է տնտեսական ինտեգրացմանը և աշխատանքի միջազգային սոցիալիստական բաժանմանը» (հոդված 30):

Նոր տիպի միջազգային հարաբերություններ ստեղծելու բնագավառում համաշխարհային սոցիալիստական համագործակցության պատմական փորձի և հասումների ուսումնասիրումն ու ընդհանրացումը սոցիալիստական երկրների հասարակագետների կարևորագույն խնդիրն է: Եվ բնական է, որ միջազգային գիտական համագործակցության պլաններում սոցիալիստական ինտերնացիոնալիզմի և սոցիալիստական ազգերի զարգացման պրոբլեմները աչքի ընկնող տեղ են գրավում:

Հասարակագետների գործունեության մարտական տեղամասը ՍՍՀՄ-ում և ամբողջ սոցիալիստական համագործակցության մասշտաբով եղել և մնում է ազգային հարցի լուծման պատմական փորձի բուրժուական ու ռևիզիոնիստական կեղծարարությունների դեմ մղվող պայքարը, զանազան ազգայնական և ռասիստական ըմբռնումների քննադատությունը:

Լենինը ժամանակին նախազգուշացնում էր, որ բուրժուազիան և մանրբուրժուական ամեն տեսակի կուսակցությունները ամենից համառորեն ձգնում են անջատել տարբեր ազգությունների աշխատավորներին, բորբոքել անվստահություն, խախտել բանվորների միջազգային սերտ դաշինքը, միջազգային եղբայրությունը: Նա վստահություն էր հայտնում, որ մեր կուսակցությանը կհաջողվի համբերատար, համառ, նպատակամետ աշխատանքով հաղթահարել



բուրժուազիայի նացիոնալիստական ոտնձգությունները, ամեն կարգի ազգայնական նախապաշարումները և բովանդակ աշխարհի աշխատավորներին ցույց տալ տարբեր ազգերի բանվորների և գյուղացիների իրոք ամուր դաշինքի օրինակ՝ հանուն շահագործողական դասակարգերի ճնշումը վերացնելու և նոր պետություն, նոր հասարակություն կառուցելու պայքարում:

ՍՄԿԿ-ն հաջողությամբ լուծեց ազատագրական պայքարում և նոր հասարակարգի կառուցման, համաշխարհային սոցիալիստական համագործակցության, տարբեր երկրների և ազգությունների կոմունիստների ու բոլոր աշխատավորների միջազգային համերաշխության ամրապնդման գործում պրոլետարական ինտերնացիոնալիզմ կիրառելու այդ մեծ պատմական խնդիրը:

Լենինյան ազգային քաղաքականությունը հետևողականորեն կենսագործելը, պրոլետարական ինտերնացիոնալիզմի ոգով աշխատավորներին դաստիարակելը, բուրժուական նացիոնալիզմի, ռասիզմի ու կոսմոպոլիտիզմի ռեակցիոն գաղափարախոսությունը մերկացնելը ՍՄԿԿ-ն համարում է իր ծրագրային խնդիրը, բոլոր կուսակցական կազմակերպությունների պատասխանատու պարտականությունը:

«Գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի հետագա բարելավման մասին» որոշման մեջ ՍՄԿԿ Կենտկոմը կոչ է անում՝ սովետական բոլոր մարդկանց համակել սոցիալիստական հայրենիքի նկատմամբ հպարտության, ՍՍՀՄ ժողովուրդների եղբայրական անխախտ բարեկամության զգացումով, դաստիարակել հարգանք ազգային արժանապատվության և ազգային կուլտուրայի հանդեպ, անհաշտելիություն՝ նացիոնալիզմի յուրաքանչյուր դրսևորման նկատմամբ: Այս ամենը պետք է նպաստի սովետական մեծ ժողովրդի միասնության և համախմբվածության հետագա ամրապնդմանը:

«Коммунист», № 1, 1980 г.

# ԱՐՏԱՑՈԼՄԱՆ ԼԵՆԻՆՅԱՆ ՏԵՍՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ԲԱՐՁՐԱԳՈՒՅՆ ՆՅԱՐԴԱՅԻՆ ԳՈՐԾՈՒՆԵՈՒԹՅԱՆ ԱՐԴԻ ՀԱՐՑԵՐԸ*

**Է. Հ. ՀԱՍՐԱԹՅԱՆ**
ՍՍՀՄ ԳԱ թղթակից-անդամ

*ԱՐՏԱՑՈԼՄԱՆ ԼԵՆԻՆՅԱՆ ՏԵՍՈՒԹՅՈՒՆԸ, որպես դիալեկտիկական մատերիալիզմի իմացաբանության հիմք, ձևավորվել ու զարգացել է իդեալիստական աշխարհայացքի և մետաֆիզիկական մատերիալիզմի դեմ մղված անհաշտ պայքարում՝ մշտապես հենվելով առաջավոր բնագիտության հավաստի ու ծանրակշիռ նվաճումների վրա, դրանք դիտելով իբրև անընդհատ հարստացման, զարգացման և կատարելագործման հուսալի աղբյուր:*

*Վ. Ի. Լենինի* Մատերիալիզմ և էմպիրիոկրիտիցիզմ *հանճարեղ երկի լույս տեսնելուց հետո բնագիտության տարբեր ճյուղերի մասնագետները բացահայտեցին ու հանգամանորեն հետազոտեցին վճռական նշանակություն ունեցող շատ ինքնատիպ ու արժեքավոր փաստեր, որոնք հաստատեցին արտացոլման լենինյան տեսության հիմնական դրույթները: Դրանով նրանք լիովին արդարացրին մարքսիզմ-լենինիզմի դասականների ակնկալիքները ո՛չ միայն այդ առումով, այլև նրանց մարգարեական կանխագուշակումներն այն մասին, որ առաջավոր բնագիտության այդպիսի նվաճումները կարող են հիմք ծառայել, լինել հզոր խթան ու նոր ազդակ մարքս-լենինյան արտացոլման տեսության փիլիսոփայորեն դեռևս անբավարար մշակված դրույթների հետագա ստեղծագործական զարգացման համար:*

*Այստեղ անհրաժեշտ է քննել ուղեղի ֆունկցիայի մասին այդ ժամանակաշրջանում երևան եկած նոր փաստերն ու կոնցեպցիաները, որոնք ուղղակի առնչվում են արտացոլման լենինյան տեսության հետ և վերաբերում արտացոլման գործունեության բարձրագույն դրսևորումներին, այդ թվում արտացոլման՝ մարդու համար որակապես առանձնահատուկ բարձրագույն ձևերին, նրա ընդհանրացնող ու վերացարկող հատկություններով հանդերձ: Աշխարհի բազում երկրների մի շարք ականավոր գիտնականներ, աշխարհայացքից անկախ, իրենց արժանի մասնակցությունն ունեն այդ հասումներում: Սակայն, հարկ է ասել, որ դրանցից առավել նշանակալիցները պատկանում են հայրենական ֆիզիոլոգիական մտքի ներկայացուցիչներ Ի. Մ. Սեչենովին և, հատկապես, Ի. Պ. Պավլովին: Այդ խոստովանում է ուղեղի ֆունկցիան տարբեր տեսանկյունից ուսումնասիրող աշխարհի մասնագետների գերակշռող մասը, այդ թվում նաև այն գիտնականները, որոնք լիովին համամիտ չեն բարձրագույն նյարդային գործունեության մասին Պավլովի ուսմունքի այս կամ այն տեսական դրույթին:*

*Բարձրագույն նյարդային գործունեության վերաբերյալ հետևողական-մատերիալիստական և ըստ էության դիալեկտիկական այդ ուսմունքը XX դարի բնագիտության բացառիկ նվաճումներից է: Ժամանակակից գիտության մեջ այդ*

**) Հոդվածի հենքը հեղինակի զեկուցումն է՝ կարդացված «Լենինյան փիլիսոփայական ժառանգությունը և ժամանակակից գիտության առաջընթացը» գիտական կոնֆերանսում:*



*ուսմունքն ուղեղի գործունեության օրինաչափությունների մասին առավել ճշգրիտ ու խոր գիտելիքների մի ներդաշնակ համակարգ է, խարսխված անալիտիկ և սինթետիկ բնույթի հավաստի, փորձով ստուգված փաստերի կուռ հիմքի վրա: Ահա թե ինչու տարիներ շարունակ մենք մեր փիլիսոփայական բնույթի հրապարակումներում ու բանավոր ելույթներում բազմիցս պաշտպանել ենք այն միտքը, թե Պավլովի ուսմունքը բարձրագույն նյարդային գործունեության մասին ժամանակակից գիտության մեջ արտացոլման լենինյան տեսության ամենահավաստի բնագիտական հիմքն է: Այդ համոզմունքը ներկայումս ամրապնդվում է այն փաստով, որ վերջին տասնամյակներին կատարելագործված ճշգրիտ մակրո և միկրոէլեկտրոֆիզիոլոգիայի, նեյրոքիմիայի և էլեկտրոնային մանրադիտակի շնորհիվ ուղեղի ֆունկցիաների մասին սովետական և արտասահմանյան հետազոտողների ստացած տվյալների գերակշռող մասը հաստատում է Պավլովի սահմանած օրինաչափություններն այդ բարձրագույն օրգանի գործունեության վերաբերյալ և որոշ չափով զարգացնում դրանք:*

*Ըստ մարքս-լենինյան տեսության, արտացոլումը մատերիայի համընդհանուր հատկությունն է՝ նյութական աշխարհում իր զարգացման հսկայական ընդգրկումով: Այն դրսևորվում է անօրգանական մատերիային հատուկ, բուն արտացոլմանը սոսկ նման պարզունակ ձևից սկսած մինչև մարդուն հատուկ վերացական մտածողությունը, որը նրա զարգացման գագաթն է և մարմնավորում է արտացոլման հատկությունը առավել կատարելագործված, խոր, լրիվ ու ակտիվ ձևով:*

*Ըստ Պավլովի, մատերիայի արտաքին ազդեցություններին* հակազդելու *համընդհանուր հատկությունը (որը բավականին մոտ է արտացոլման հասկացությանը) կենդանի էակի մոտ ստանում է* հարմարվելու *բնույթ և դրսևորվում անհատական կյանքում փոխադարձաբար միմյանց հետ կապված երկու ձևով՝* բնածին և անհատական կյանքում ձեռքբերովի: *Պավլովի այս միտքը համահնչուն է մարքս-լենինյան տեսությանը և համապատասխան Դարվինի էվոլյուցիոն ուսմունքի հիմնական սկզբունքներին: Այն բազմիցս արտահայտվել է նրա գործերում: «Կենդանի էակի ամենաընդհանուր բնութագիրն այն է,— գրել է նա,— որ կենդանի էակն իր որոշակի գործունեությամբ պատասխանում է ո՛չ միայն արտաքին գրգիռներին, որոնց հետ կապը գոյություն ունի ծննդյան օրվանից, այլև շատ այլ գրգիռների, որոնց հետ կապը զարգանում է անհատական գոյության ընթացքում, այլ կերպ ասած՝ կենդանի էակն ունի հարմարվելու ունակություն»* (И. П. Павлов, Полн. собр. трудов. 1949, т. III, стр. 369)*: Պարզագույն կենդանի էակներին հատուկ բնածին և, հատկապես, անհատական հարմարվողականության հասարակ, մինչնյարդային ձևերն անչափ բարձր և որակապես նոր աստիճանի են հասնում կենդանական աշխարհի էվոլյուցիայի ընթացքում նյարդային համակարգի առաջացմամբ ու զարգացմամբ: Իսկ բուն նյարդային համակարգի երկարատև էվոլյուցիան հանգեցնում է ռեֆլեքսների աճող բազմազանության, ռեֆլեկտոր գործունեության անշեղ կատարելագործման, որը ժամանակի ընթացքում դառնում է օրգանիզմի ներքին կյանքի, հատկապես շրջապատող միջավայրի հետ նրա բարդ փոխհարաբերությունների հիմնական կարգավորիչը: Դա կատարվում է դարձյալ ռեֆլեքսների երկու տիպերի՝ բնածինի և ձեռքբերովիի միջոցով: Այդ էվոլյուցիան բնութագրվում է կենտրոնական նյարդային համակարգի աճող ձևաբանագործառական (մորֆոֆունկցիոնալ) տարբերակմամբ, նրա մյուս բաժինների նկատմամբ գլխուղեղի բաժինների գերազանցումով հանդերձ, նրա կարևորագույն ֆունկցիաների անշեղ ուղեղայնացմամբ (էնցեֆալիզացիա) և կեղևայնացմամբ (կորտիկալիզացիա): Այստեղ մեզ հետաքրքրող հարցի առումով խիստ ուշագրավ է այն հանգամանքը, որ բուն զարգանում ու բարդանում է անհատական-ձեռքբերովի ռեֆլեկտոր գործունեությունը, որը կենդանական աշխարհի բարձր զարգացած ներկայացուցիչների մոտ, հատկապես շրջապատող միջավայրի հետ նրանց բարդ փոխհարաբերություններում, շատ ցուցանիշներով՝ իր կատարելության մակարդակով, ձևերի բազմազանությամբ, ընդգրկման դիապազոնով և կենսաբանական նշանակությամբ հանգեցնում է դրա շեշտակի գերակշռությանը բնածին ռեֆլեքսային գործունեության նկատմամբ: Իսկ մար-*

շարժ անտրոպոմորֆիստական դեկլարացիայից այն մասին, թե, իբր, պայմա-
նական և ոչ-պայմանական ռեֆլեքսների մասին Պավլովի փաստերը վկայում
են, որ շներն ընդունակ են զարգացնելու առաջիկա նպատակահարմար գործու-
նեության վերաբերյալ համապատասխան տեսություններ: Ոմն Ռ. Ջեյմս, ասես,
կրկնելով նրանց՝ ազդարարել է, թե «պայմանական ռեֆլեքսը առասպել է»:
Այսպիսի օրինակները կարելի է շարունակել, բայց այստեղ դրա անհրա-
ժեշտությունը չկա: Կուզենայինք, սակայն, Էքլսի մասին ասվածին մի քանի
խոսք ավելացնել:

Էքլսը ժամանակակից խոշորագույն նեյրոֆիզիոլոգներից է, մեկը նյար-
դային համակարգի ֆունկցիաները նեյրոնային (նյարդաբջիջ) և սինապսային
մակարդակներում ուսումնասիրող պիոներներից, Նոբելյան մրցանակի դափ-
նեկիր է ու հեղինակ մի շարք արժեքավոր մենագրությունների, որոնցից երե-
քը թարգմանվել են ռուսերեն և հրատարակվել մեզ մոտ: Այդ ամենի պատճա-
ռով էլ Էքլսը չի սահմանափակվել սոսկ իր մարտնչող իդեալիստական դոգմա-
ների հռչակումով կամ իր գաղափարական հակառակորդների փիլիսոփայական
կոնցեպցիաներին ճչացող պիտակներ փակցնելով, այլ ձգտում է իր փիլիսո-
փայական դրույթները փաստարկել ժամանակակից նեյրոֆիզիոլոգիայի և,
ամենից առաջ՝ իր իսկ ձեռք բերած փաստական ու տեսական նվաճումների
միջոցով: Իսկ դա շատերի վրա է ուժեղ տպավորություն գործում: Մինչդեռ խո-
րապես ծանոթանալով հարցի բուն էությանը, պարզվում է, որ Էքլսի իդեալիս-
տական կոնցեպցիաների նեյրոֆիզիոլոգիական փաստարկումը ճիշտ չէ և զուրկ
է գիտական հիմքից: Նա նեյրոնների ու սինապսների խոշոր ուսումնասիրող է
և հոգեկան գործունեության բարձրագույն ձևերի մասին իր կոնցեպցիաները
հիմնականում փաստարկում է առանձին նեյրոնների ու դրանց խմբերի վերա-
բերյալ իր այդ ֆիզիոլոգիական փաստերով: Դա նույնն է, ինչ առանձին աղյու-
սի հատկությունները ուսումնասիրելով՝ մարդ հանդգնի պատրանքային պատ-
կերացում կազմել այդպիսի աղյուսներով կառուցվելիք մի փառավոր շենքի
բարդ ճարտարապետության մասին: Նեյրոնների և անգամ դրանց կոմպլեքս-
ների ֆունկցիոնալ առանձնահատկությունների վերաբերյալ ամենաճշգրիտ ու
ամենահավաստի տվյալներն իսկ չեն կարող բնագիտական համազոր հիմք
ծառայել հոգեկան գործունեության ծագման և դրա էության մասին փիլիսո-
փայական կոնցեպցիաներ զարգացնելու համար. այն ուղեղի, որպես մի ամ-
բողջական գոյացության, ֆունկցիան է: Իսկ Էքլսի համար գոյություն չունեն
դասական գործերն այն ականավոր գիտնականների, որոնք տասնամյակներ
շարունակ հետազոտել են ուղեղի ֆունկցիան նրա գործունեության բնական պայ-
մաններում: Նրա համար չկան Պավլովի, Թորնդայկի, Գոլցի, Գարդների և շատ
ուրիշների դասական գործերը, որոնց հարուստ, ծանրակշիռ ու հավաստի ար-
դյունքներն իրոք բնագիտական հիմք են հոգեկան գործունեության ծագման ու
բնույթի մասին փիլիսոփայական կոնցեպցիաների զարգացման համար: Նա չի
վկայակոչում ու չի հիշատակում նրանց: Հավանաբար նրան իր փիլիսոփա-
յական սպեկուլյացիաների այդ աքիլեսյան գարշապարի մասին առաջին ան-
գամ հրապարակավ ասվեց 1978 թ. միջազգային կոնգրեսում, սույն հոդվածի
հեղինակի կողմից:

Երկար տարիներ բնագիտության փիլիսոփայությամբ զբաղվող առանձին
սովետական մասնագետներ ևս պաշտպանում էին այնպիսի կոնցեպցիաները,
որոնցում քննադատվում էր Պավլովի ուսմունքը հիմնականում այն նույն
դիրքերից, ինչ դա անում են այդ ուսմունքի վերոհիշյալ արտասահ-
մանյան ընդդիմախոսները: Այդ մտայնության կողմնակիցները Պավլովի ուս-
մունքը ներկայացրել են իբրև մեխանիկական, պարզունակ, հետամնաց, իր
դարն ապրած: Իսկ ուղեղի ֆունկցիաների ուսումնասիրության Պավլովի ուս-
մունքի փոխարեն նրանք իրենց կոնցեպցիաներն էին առաջարկում՝ որպես գի-
տության նորագույն, պրոգրեսիվ ու, թերևս, նաև ամենավերջին նվաճում, բայց
որոնք իրականում մեծ մասամբ ամենևին էլ ինքնատիպ չէին, իսկ հաճախ
սոսկ կրկնությունն էին Պավլովի ուսմունքի հիշատակված արտասահմանյան
քննադատների գաղափարապես արատավոր, թելեոլոգիական, անտրոպոմոր-
ֆիստական, բայց նորի խաբուսիկ փայլով շլացնող հայացքների:



Ցավոք, այդ սխալ ու վնասակար կոնցեպցիան լայն տարածում էր գտել ու
համակել էր նույնիսկ մեր առանձին հրատարակչությունների, հանդեսների
խմբագրական կոլեգիաներին և փիլիսոփայական կոնֆերանսների կազմակեր-
պիչներին: Հասկանալի է, որ այդ ամենը չէր կարող չհանգեցնել Պավլովի մա-
տերիալիստական մեծ ուսմունքի նկատմամբ ուշադրության թուլացման: Այդ
են վկայում Պավլովի հետևորդ ֆիզիոլոգների և որոշ չափով էլ փիլիսոփաների
ելույթները կամ աշխատանքները հրատարակելու գործում խոչընդոտներ հա-
րուցելու բազմաթիվ դեպքերը: Դրան հակառակ Պավլովի ուսմունքի քննադատ-
ների համար ստեղծվել էին միանգամայն նպաստավոր պայմաններ: Արդյոք
պատահակա՞ն է, որ Վ. Ի. Լենինի Մատերիալիզմ և էմպիրիոկրիտիցիզմ անմահ
գործը լույս տեսնելուց 70 տարի անց երկրի փիլիսոփայական առաջատար պար-
բերականներից մեկը հոդված է տպագրում, ուր այն թեզն է արծարծվում, թե
հոգեկան գործունեության օրգանը ոչ թե ուղեղն է, այլ ամբողջ մարմնով մեկ
ցրիվ եկած մի ինչ-որ առասպելական սուբստանցիա: Բարեբախտաբար, այդ
մապարեզում վիճակն սկսել է փոխվել, սակայն դեռևս հեռու է բավարար լինե-
լուց: Ջանքերն այդ ուղղությամբ պետք է լինեն եռանդագին ու գործուն:

Ձմոռանանք, որ մեծ ֆիզիոլոգի մասին Վ. Ի. Լենինի 1921 թ. հունվարի
հռչակավոր դեկրետից սկսած՝ մեր կուսակցության ղեկավարությունը և սովե-
տական կառավարությունը Պավլովի ուսմունքի զարգացումը դարձրին հատուկ
ուշադրության առարկա, ստեղծելով այնպիսի պայմաններ, որոնց մասին չէր
կարող անգամ երազել աշխարհի և ոչ մի գիտնական: Ահա թե ինչու պետք է
ամբողջ սրտով ցանկալ, որ այդ ուսմունքի նկատմամբ սկսված մակընթացու-
թյունն արագ ու անշեղ ծավալվի ու դառնա կայուն երևույթ: Այդ են պահանջում
մեր գիտության շահերը, մեր աշխարհայացքը: Ի. Պ. Պավլովի մատերիալիս-
տական ուսմունքի մասին գոյություն ունեցող թյուր հասկացողությունները
հերքելու և դրանք ճշգրիտ իմացությամբ փոխարինելու գործին նպաստե-
լու համար անհրաժեշտ է մասսայական տպաքանակով հրատարակել
Ի. Պ. Պավլովի ընտիր երկերի ժողովածուն, ինչպես նաև մեծ գիտնականի
Կենդանիների բարձրագույն նյարդային գործունեության (վարքի) օբյեկտիվ
ուսումնասիրության Քսանամյա փորձը հիմնական աշխատությունը, որոնցում
հատկապես ակնբախ է նրա ուսմունքի աշխարհայացքային նշանակությունը:

# ԱՐՎԵՍՏԻ ԳԱՂԱՓԱՐԱԿԱՆ ՈԳԻՆ

Ա. Ս. ՍԻՄՈՆՅԱՆ

Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ՏԵՍԱԿԱՆ ժառանգության մեջ առանձնահատուկ տեղ են գրավում արվեստին ու գեղագիտությանը նվիրված աշխատություններն ու ասույթները: Նա արվեստը համարել է ճանաչողության ու պայքարի հզոր միջոց աշխատավորությանը սոցիալական կեղեքումից ազատագրելու գործում: Կուսակցական կազմակերպություն և կուսակցական գրականություն հոդվածում Լենինն առաջ քաշեց արվեստի ու գրականության կուսակցականության սկզբունքային դրույթը, որը Կ. Մարքսի ու Ֆ. Էնգելսի՝ արվեստի դասակարգային տենդենցիոզության մասին ուսմունքի ստեղծագործական զարգացումն է:

Դասակարգայնության ու կուսակցականության լենինյան ուսմունքի հիմքում դրված է գեղարվեստական ստեղծագործության սոցիալական դետերմինավորման մատերիալիստական գաղափարը: Դասակարգայնության մեջ արտահայտվում է անցումը «սեփական գեղագիտական» ոլորտից սոցիալականի աշխարհը. արվեստի ստեղծագործությունն սկսում է ներազդել որոշակի միջավայրում, հասարակության մեջ, դադարելով լինել սոսկ արվեստագետի անհատական գործը, դառնում հասարակական երևույթ:

Լենինյան աշխատություններում սահմանված են արվեստի դասակարգայնության հիմնական չափանիշները— թեմայի ընտրությունը, արվեստագետի վերաբերմունքը պատկերավորման առարկային, նրա հասարակական-գեղագիտական իդեալը, կապը ստեղծագործական մեթոդի հետ: Դասակարգայնությունը, սերտորեն շաղկապվելով ընտրության սկզբունքի հետ, տարածվում է բնավորությունների, կոնֆլիկտների, ինչպես և ստեղծագործության ողջ կերպարային կառուցվածքի վրա: Արվեստագետի դիրքավորումը, իրականության գեղագիտական արժեքավորումը, ի վերջո, պայմանավորվում են նրա դասակարգային համակրանքով ու հակակրանքով, աշխարհհայացքով, քաղաքական ու սոցիալական հայացքներով:

Տենդենցիոզությունը, դասակարգայնությունը, կուսակցականությունը կոնկրետ-պատմական կատեգորիաներ են: Դրանք ոչ թե այս կամ այն գրողի քմահաճույքի արդյունքն են, այլ առաջանում են պատմական անհրաժեշտությամբ, մարդկային հասարակության վերընթաց զարգացման պրոցեսում: Գեղագիտական նոր կատեգորիաների ձևավորումը, ինչպես և առկա հասկացությունների որակական նորացումը մեծապես պայմանավորված են հասարակական բազիսի փոփոխություններով, որն իր հերթին հանգեցնում է ողջ գաղափարական վերնաշենքի փոփոխման: Կուսակցականության կատեգորիան արվեստի ընդլայնման ու հարստացման, իրականության գեղարվեստական խոր ճանաչման արդյունք է: Լենինը նկատել է. մարքսիզմի ոգին պահանջում է, որ յուրաքանչյուր երևույթ քննվի պատմականորեն, պատմության կոնկրետ փորձի հետ առնչված:

Գեղարվեստական ստեղծագործության կոնկրետ-պատմական փորձը վկայում է, որ կուսակցականության սկզբունքը պայմանավորված է արվեստի զարգացման ընթացքով: Պատմական նոր հանգամանքներում այն գաղափարական նպատակասլացության, տենդենցիոզության, դասակարգայնության նոր արտահայտություն է: Մարդկանց գիտակցության մեջ սոցիալիստական գաղա-



փարների թափանցումը, հեղափոխական պայքարի վերելքը պայմանավորեցին XIX դարի վերջի և XX դարասկզբի հատկապես գեղարվեստական գրականության գաղափարական ուղղվածության, միտումների որակական նորացումը:

Ռուս հեղափոխական դեմոկրատներ Գերցենի, Չերնիշևսկու, Սալտիկով-Շչեդրինի, ինչպես և Արևմուտքում Վեյերտի, Հայնեի, Մորիսի ստեղծագործությունները տոգորված էին սոցիալիստական գաղափարներով: Սակայն, ինչպես նշել է Լենինը, հեղափոխական դեմոկրատները տրտնջում էին ժողովրդի հոգևոր կյանքում գիտակցական գաղափարայնության բացակայության մասին: Երբ բորբոքվում էր դասակարգային պայքարի կրակը, սոցիալական նոր բովանդակությամբ էին տոգորվում զանգվածների իդեալները, իմաստավորված ու նպատակասլաց էին դառնում նրանց կենսական ու դասակարգային սկզբունքները, հեղափոխական պայքարն ավելի էր մերձենում գիտական սոցիալիզմի գաղափարներին: Նույնիսկ Դ. Մերեժկովսկին, որ չէր ընդունում մարքսիստական փիլիսոփայությունը և ռեալիստական արվեստը, ստիպված էր խոստովանել, թե ամբոխի գերակշռող ճաշակը դեռևս ռեալիստական է: Ապարդյուն են մեր գաղափարական հակառակորդների փորձերը խեղաթյուրելու սոցիալիստական գեղարվեստական ստեղծագործության առաջացման իրական պատմությունը, պնդելով, թե իբր կուսակցականությունը վոլյունտարիզմի պտուղն է և դեկրետավորված է «վերուստ»:

Հաճախ կուսակցականությունը նմանեցվում է գաղափարախոսության մյուս ձևերին, մասնավորապես փիլիսոփայությանը: Այդ հաստատելու համար վկայակոչում են Լենինի՝ նորագույն փիլիսոփայությունը նույնպես կուսակցական է, ինչպես և երկու հազար տարի առաջ, դրույթը: Լենինը նկատի ուներ մարտնչող կուսակցությունների երկու միտումները՝ մատերիալիզմը և իդեալիզմը, որոնք անցնում են փիլիսոփայության պատմության միջով և ըստ էության փիլիսոփայությունը բաժանում են երկու լագերի՝ մատերիալիստական ու իդեալիստական: Լենինյան այս դրույթի մեխանիկական տարածումը արվեստի ոլորտը հանգեցնում է արվեստագետների բաժանմանը ռեալիստների ու հակառեալիստների: Մինչդեռ, ինչպես նկատել է Լենինը, կուսակցականությունը բարձր զարգացած դասակարգային պայքարի արդյունքն է: Իսկ «ռեալիզմ-հակառեալիզմ» կոնցեպցիան հեռու է գեղարվեստական ստեղծագործության կենդանի զարգացումից: Սխալ է և այն տեսակետը, երբ կուսակցականությունը դիտվում է սոսկ որպես կոմունիստական կուսակցականություն: Ճիշտ չէ, իհարկե, խոսել «ազնվական» կուսակցականության մասին: Բայց չպետք է համաձայնել այն կարծիքին, թե գերսրված դասակարգային հակասությունների դարաշրջանում ռեակցիոն արվեստի էությունը չի բնութագրվում որպես բուրժուական կուսակցականություն:

Եթե դիմենք XX դարասկզբի արվեստի պատմությանը, ապա ակներև է, որ իշխող դասակարգերը բնավ անտարբեր չեն եղել գեղարվեստական ստեղծագործության նկատմամբ: Այդ մասին են վկայում դեմոկրատական գրականության արգելման բազում փաստերը և բացահայտ աջակցությունը, որ ստանում էին դեկադանսի և սիմվոլիզմի ներկայացուցիչները: Ռուսաստանում այդ արվեստը հովանավորում էին խոշոր արդյունաբերողներ Ռյաբուշինսկին, Մորոզովը, Պոլյակովը, իշխան Ուրուսովը, բարոն Իկսկուլը: Նիկոլայ Երկրորդը դեկադենտական «Արվեստի աշխարհ» հանդեսին ամեն տարի տրամադրում էր 30 հազար ռուբլի:

Իր աշխատություններում Լենինը ցույց է տվել, որ բուրժուական գրողը կատարում է իր դասակարգի սոցիալական պատվերը: Շուկա են հանվում բուրժուական ընթերցողի ու հանդիսատեսի պահանջմունքները բավարարող գործեր, որտեղ գովերգվում են սեռական սանձարձակությունը, բարոյազրկությունը, բռնությունը, ուժեղ անհատի պաշտամունքը, ազատ ձեռներեցության հրաշքների մասին առասպելը, բուրժուայի խելքը, եռանդը և հնարամտությունը:

Բուրժուական արվեստագետների բացահայտ կապը իշխող դասակարգերի հետ առավել ակնբախ հանդես է գալիս մեր օրերում, գաղափարական պայքարի սրման պայմաններում:

ռոսները արվեստագետի ստեղծագործական երևակայությամբ կերտված մտահայեցողական բնավորություններ չեն: Նոր մարդու կերպարում չկա ոչինչ մտացածին: Այդ են վկայում սովետական արվեստի ու գրականության լավագույն գործերը (Գուբանովը՝ Քո ժամանակակիցը կինոնկարում, Հ. Զարդարյանի, Ս. Մուրադյանի կտավները, Հ. Մաթևոսյանի կերտած շատ հերոսներ):

Բնական է, որ սովետական արվեստում, զարգացման ամեն մի փուլում շեշտվել են նոր մարդու որոշակի, կոնկրետ-պատմական հատկանիշները: Իր ինքնատիպ նկարագիրն ուներ մասսաների հոգևոր աճը սոցիալիստական հեղափոխության պայքարում, հին աշխարհի վերակերտման պրոցեսում: Փոխվում են ներկապնակի գույները նոր կյանքի ու հոգեբանության արմատավորման պրոցեսը նկարագրելիս: Կերպարների ու բնավորությունների, հակասությունների ու բախումների էվոլյուցիան պայմանավորվում է ռեալ կյանքում կատարվող փոփոխություններով:

Ոչ վաղ անցյալում որոշ քննադատներ այն տեսակետն էին պաշտպանում, թե, ի տարբերություն դասական ռեալիզմի քննադատական ոգու, սոցիալիստական ռեալիզմին բնորոշ է կենսահաստատումը: Նման թյուր մտայնությունից բխում էին սխոլաստիկական այն պատկերացումները, թե սովետական արվեստում որոշակի հարաբերակցությամբ են դրսևորվում դրականն ու բացասականը: Այդ մտացածին դեղատոմսը ընդհանուր ոչինչ չունի արվեստում իրական կյանքի ճշմարտացի արտացոլման հետ: Էականը ոչ թե դրականի ու բացասականի. դոզավորված համամասնությունն է, այլ արվեստագետի գաղափարական դիրքորոշումը, նրա տաղանդը, սկզբունքայնությունը, կյանքի երևույթների խոր ճանաչումը:

Սոցիալիստական ռեալիզմի արվեստի համար չկան արգելված թեմաներ: Կյանքի ճշմարտացիությանը հետևելը արվեստագետներից պահանջում է մարմնավորել նաև մարդկային ողբերգություններն ու տառապանքները, խոտելի, բացասական երևույթները: Ստեղծագործության գաղափարայնությունը պայմանավորված է ոչ թե թեմաների սխոլաստիկական հաշվեկշռով, այլ ողբերգական կերպարներն ու իրադարձությունները, սոցիալական պայքարի դիալեկտիկան ճշմարտացի, կյանքի հեղափոխական շարժման մեկնակետից լուսաբանելու արվեստագետի կարողությամբ:

Սովետական արվեստի հիմնական հերոսը, Մ. Գորկու արտահայտությամբ, աշխատանքն է, երկրի վրա նյութական ու հոգևոր արժեքներ ստեղծող մարդը: Սակայն այս խնդրի գեղարվեստական լուծման ընթացքում նկատվեց որոշ միակողմանիություն: Ստեղծվեցին գործեր, որտեղ թանձր գույներով պատկերվեցին արտադրապրոցեսների տեխնոլոգիան, աշխատամիջավայրը, իսկ գլխավոր արտադրուժը՝ մարդը, իր ներաշխարհով մնում էր ստվերում (Ա. Սաֆրոնովի Մոսկովյան բնավորություն պիեսը, Ս. Բաբաևսկու Ոսկե աստղի ասպետը վեպը, 50-ական թվականների հայ կերպարվեստագետների ստեղծած առանձին դիմանկարներ): Հետագայում նման մոտեցումը հաղթահարվեց: Սակայն երևան եկավ մի այլ ծայրահեղություն— ստեղծագործության կիզակետը հիմնականում դարձավ կյանքի ինտիմ ոլորտը: Սովետական հասարակայնության գեղագիտական ճաշակին խորթ էին այդ կարգի ստեղծագործությունները և չգտան պատշաճ ընդունելություն: Առանձին հեղինակներ փորձեցին արտադրական թեմայի միակողմանի ըմբռնումը և մանրաթեմայնությունը հաղթահարել «գեղարվեստական չափի» պահպանմամբ: Նրանք որոշ համամասնության մեջ պատկերեցին կյանքի բոլոր ծալքերը: Այս մոտեցումը նույնպես չդիմացավ ժամանակի քննությանը: Կարելի է հիշատակել բազմաթիվ գործեր, որտեղ կարծես ամեն ինչ կա, սակայն չկան մեծ կրքեր, բնավորություններ, ամբողջական կերպարներ, տպավորիչ հերոսներ: Սովետական մարդու ամբողջական կերպարի բացահայտման համար անհրաժեշտ է նրա ներաշխարհի խորիմացություն, իսկ ներաշխարհը ձևավորվում և դրսևորվում է աշխատանքում:

Այսօր գիտատեխնիկական հեղափոխության դարում, որն ակտիվ ներազդում է մարդու հոգևոր կյանքի բոլոր կողմերի վրա, դժվար է շրջանցել աշխատանքի թեման: Վերջինս ամուր տեղ է գրավել սովետական արվեստի լա-



վագույն գործերում: «Վերցնենք, օրինակ այն,— նշվեց կուսակցության XXV համագումարում,— ինչ նախկինում չոր ու ցամաք կերպով անվանում էին «արտադրական թեմա»: Այժմ այդ թեման ձեռք է բերել իսկական գեղարվեստական կերպարանք: Գրական կամ բեմական հերոսների հետ միասին մենք վերապրում, հուզվում ենք ձուլագործների կամ տեքստիլ ֆաբրիկայի դիրեկտորի, ինժեների կամ կուսակցական աշխատողի հաջողության համար: Եվ նույնիսկ մի այնպիսի, թվում է, մասնավոր դեպք, ինչպիսին է շինարարների բրիգադի պարգև-հավելավճարի հարցը, ձեռք է բերում լայն հնչողություն, դառնում է բուռն բանավեճերի առարկա»:

Հիրավի, կան բոլոր հիմքերը հաստատելու, որ նոր մարդու՝ աշխարհի հեղափոխական, կոմունիստորեն վերակերտող մարտիկի, գաղափարագեղագիտական կոնցեպցիան սոցիալիստական արվեստի կենդանի նյարդն է: «Չհասկանալով գործերը,— գրել է Վ. Ի. Լենինը,— չի կարելի հասկանալ և մարդկանց... Այսինքն՝ կարելի է հասկանալ պայքարի այս կամ մասնակցի հոգեբանությունը, բայց ոչ պայքարի իմաստը, ոչ նրա կուսակցական ու քաղաքական նշանակությունը» (ПСС, т. 47, стр. 221):

Կոմունիզմի հասարակական-գեղագիտական իդեալը արվեստագետի ուշադրությունը բևեռում է իրականության այնպիսի երևույթների վրա, որտեղ առավել խորությամբ է բացահայտվում աշխարհի և մարդու վերափոխումը: Իրականության գեղարվեստական ճանաչման պրոցեսի սոցիալիստական իմաստավորումը արվեստագետին հնարավորություն է ընձեռում հուզականորեն, պատկերավորված հաստատելու հերոսականը մարդու մեջ, նրա գործերում: Այն արվեստագետին մղում է օբյեկտիվորեն թափանցելու իրականության զանազան կողմերը, բացատրելու տվյալ ժամանակաշրջանի բարդ երևույթները, դարի սոցիալ-բարոյական պրոբլեմները: Այստեղ ոչ թե «բնական առարկայությունն է» համակերպվում գաղափարագեղագիտական կոնցեպցիային, այլ կատարյալ մարդու իդեալը՝ մասսաների պատմական շարժման, սոցիալական զարգացման օրենքների հետ: Կյանքի ճշմարտացի ճանաչումն ու բացատրումը, արվեստագետի ակտիվ սոցիալական դիրքավորումը սոցիալիստական ռեալիզմի արվեստի բնորոշ հատկանիշներն են:

Տակավին չի հաղթահարված այն մտայնությունը, թե իբր իրականությունը պատկերող նյութն ինքնին որոշում է կյանքի ու արվեստի կոնցեպցիան: Արվեստում «իրականության գերիշխման» կեղծ պատկերացումն առնչվում է արվեստագետի միտումնավորության բացարձակ բացառման հետ: Երբեմն նման հայացքները հաստատելու համար վկայակոչում են Մարքսի և Էնգելսի քննադատական վերաբերմունքը մերկ տենդենցիոզության, ստեղծագործության միտումնավոր կերպարային բովանդակության նկատմամբ: Դրա համաձայն տենդենցը ներկայացվում է որպես օբյեկտիվ պատկերմանը հակադրվող միջոց, որը նախապես խախտում է ռեալ կերպարը, կյանքի բնական տրամաբանությունը: Ճիշտ է, տենդենցը ոչ միշտ է համընկնում պատմության ռեալ շարժմանը, սակայն այն հիմք չի տալիս արվեստում բացասելու ամեն տենդենցիոզություն: Այդ դեպքում վերանում է տարբերությունն իրականության իսկական պատկերը խեղաթյուրող տենդենցիոզության և իրական պրոցեսներն ընդհանրացնող տենդենցիոզության միջև:

Կուսակցականության մեջ են հատկապես մարմնավորվում գաղափարը, հոգևոր սկզբունքների անմիջական իրականացումը: Ահա թե ինչու կուսակցականության սկզբունքը գեղարվեստական ստեղծագործության ոլորտում միաժամանակ և՛ հասարակական, և՛ գեղագիտական պրոբլեմ է:

Բուրժուական գաղափարախոսների կարծիքով, կուսակցականության լենինյան սկզբունքը նշանակում է օբյեկտիվության բացասում: Նրանք փորձում են անգամ նույնացնել այն պրագմատիզմի հետ: Արդի ռեակցիոն տեսաբանները համառորեն ձգտում են հիմնավորել իրենց թյուր տեսակետը, թե իբր կուսակցականության սկզբունքը, արվեստագետի դիրքորոշման որոշակիությունը խանգարում են ստեղծագործական անհատականության բնական դրսևորմանը: Սոցիալիստական արվեստի պրակտիկան, մարքս-լենինյան տեսությունը ժխտում են նման հակագիտական դատողությունները:

թյուններով հասարակական կյանքի բոլոր բնագավառներում, ճգնում է վարկաբեկել սոցիալիզմը, գովաբանել բուրժուական ապրելակերպը։ Կապիտալի ջատագովները, խտրություն չդնելով միջոցների մեջ, փորձում են մոդեռնիզմի արվեստը ներկայացնել որպես ժամանակակից մարդու հոգևոր պահանջմունքների արտահայտություն։ Մոդեռնիզմի պրակտիկայում հստակ ի հայտ է գալիս արվեստի դեհումանիզացիայի գաղափարը՝ թաթախված հոռետեսական խոհերով և անկումային տրամադրություններով. դրանք միավորող օտարված անհատի կոնցեպցիան ըստ էության ուղղված է մարդու, նրա բանականության ու սոցիալական պրոգրեսի հաղթանակի նկատմամբ տածած հավատի դեմ։ Բուրժուական իրականության պայմաններում անարգել պրոպագանդվում են մարդատյաց գաղափարներ, գովերգվում են բռնությունը, դաժանությունը, անասնական կրքերը։ Եվ այդ բոլորը տարածվում են ինֆորմացիայի մասսայական միջոցներով, մթագնելով աշխատավորական զանգվածների գիտակցությունը։ Կարծեցյալ մշուշով պատած այդ խայտաբղետ պատկերները, աններդաշնակությունն ու շփոթը, քաոսն ու անկարգությունը խրախուսում ու հովանավորում են կառավարող շրջանները։ Այս բուրժուական կուսակցականության բացահայտ դրսևորում է։ Անկուսակցականությունը բուրժուական կուսակցականության ձև է։ Այն որոշակի օրինաչափություն է բովանդակում։ Հակաժողովրդական ռեակցիոն գաղափարախոսությունը քողարկվելու կարիք ունի։ Իրականում բուրժուական կուսակցականությունը խորտակում է արվեստը։ Այն արվեստագետին ծանր հակասության մեջ է դնում կյանքի ճշմարտության հետ, ստիպում նրան կեղծել, բռնանալով ստեղծագործության վրա, փորձում արգելել նրան՝ սուզվելու ժողովրդի կյանքի խորքերը։

Դասակարգային հասարակությունում ճշմարտացիությունը մշտապես ուղեկցվում է անճշմարտացիության հետ, ճշմարտացիությունն ունի իր անտիպոդը։ Հասարակական կյանքում արվեստագետի դիրքորոշումը միջավայրի բոլոր իրադարձությունների նկատմամբ պետք է լինի հստակ, բխի դասակարգային, կուսակցական աշխարհայեցողությունից։ Սոցիալական պացիֆիզմը, որը «ոսկե միջինն է» փնտրում և հույս ունի դուրս բերել համամարդկայինը բուրժուականից ու սոցիալիստականից, մոլորություն է, անիրականալի պատրանք։

Կոմունիստական կուսակցականությունը, շաղկապելով արվեստագետին ժողովրդին հուզող կենսական պրոբլեմների հետ, անչափ ընդլայնում է նրա ստեղծագործական հնարավորությունները։ Սովետական արվեստագետը, արտահայտելով մեր ժամանակի ամենաառաջավոր ու ազնիվ գաղափարներն ու ձգտումները, գիտակցաբար ու նպատակասլաց հետևում է կուսակցության քաղաքականությանը։ Սոցիալիստական արվեստի փորձը համոզիչ վկայում է, որ մեր երկրում միայն այն արվեստագետներն են ստեղծել իսկական գեղագիտական արժեքներ, որոնց ստեղծագործությունը տոգորված է կոմունիստական գաղափարայնությամբ։ Լավ է ասել Մ. Շոլոխովը. «Մեզնից յուրաքանչյուրը գրում է իր սրտի թելադրանքով, իսկ մեր սրտերը պատկանում են կուսակցությանը և հարազատ ժողովրդին, որին մենք ծառայում ենք մեր արվեստով»։

# ՄԱՐՔՍԻԶՄԻ ԶԱՐԳԱՑՄԱՆ ԼԵՆԻՆՅԱՆ ԽԻԶԱԽՈՒՄԸ

**Ա. Ս. ՄԱՆԱՍՅԱՆ**
Փիլիսոփայական գիտությունների թեկնածու

*Լենինի անվան, նրա ուսմունքի հետ են կապված XX դարի ակնառու հեղափոխական իրադարձությունները։ Չկա և չի կարող լինել մարքսիզմ, առանց այն նորի, ինչ դրա զարգացման մեջ մուծել է Լենինը։* Լենինիզմը արդի դարաշրջանի մարքսիզմն է, միջազգային բանվոր դասակարգի միասնական, ամբողջական, անընդհատ զարգացող ուսմունքը։

*(«Վլադիմիր Իլյիչ Լենինի ծննդյան 110-րդ տարեդարձի մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշումից)*

ՄԱՏԵՐԻԱԼԻԶՄ ԵՎ ԷՄՊԻՐԻՈԿՐԻՏԻՑԻԶՄ աշխատությունը առանձնահատուկ տեղ ունի լենինյան տեսական ժառանգության մեջ։ Մարքսիզմի դասական այդ երկը նոր փուլ նշանավորեց դիալեկտիկական և պատմական մատերիալիզմի զարգացման ասպարեզում, որի խնդիրն էր պատասխանել ժամանակի հասարակական և գիտական առաջընթացի հարուցած աշխարհայացքային բնույթի հրատապ հարցերին։

Ինչպես հայտնի է, Մարքսից և Էնգելսից հետո, պատմական համեմատաբար կարճ ժամանակամիջոցում թե՛ հասարակական կյանքում, թե՛ գիտության ասպարեզում նշանակալից այնպիսի փոփոխություններ կատարվեցին, որոնք դժվար էր կանխատեսել. դրանք գործնական ու տեսական բնույթի նոր խնդիրներ առաջադրեցին փիլիսոփայությանը։ Հայտնի է, որ այդ ժամանակաշրջանում կապիտալիզմը մուտք գործեց զարգացման իր բարձրագույն՝ իմպերիալիզմի փուլը։ Միջազգային բանվորական շարժման կենտրոնը Արևմտյան Եվրոպայից տեղափոխվեց Ռուսաստան։ Այդ շարժման մեջ առաջ եկան նոր հոսանքներ, ընդլայնվեց ու խորացավ հեղափոխական պրոցեսը։ Արմատական էին նաև գիտական իմացության մեջ կատարված փոփոխությունները։ Այդ ընթացքում գիտության մեջ առաջ եկան նոր ուղղություններ, որոնք փոխեցին նախկին բնագիտական պատկերացումները։

Ժամանակակից գիտության ծնունդը, անկասկած, պայմանավորված էր մի կողմից արտաքին աշխարհի նոր օբյեկտների, նոր երևույթների (միկրոերևույթների) ուսումնասիրման և մյուս կողմից՝ դրա հետ կապված նոր մեթոդների կիրառման հետ։ Գիտական նոր մտածելակերպի առանձնահատկություններն էին՝ տեսականացումը (գիտության «հեռացումը» մարդկային անմիջական փորձից). տեսական համակարգերի դերի մեծացումը գիտական իմացության պրոցեսում. ակնառության կորուստը (նվազեց ակնառու պատկերների դերը). անհամապատասխանությունը ողջախոհությանը (խելահեղ գաղափարների հեղեղը ներխուժեց գիտության աշխարհը, նշանավորելով առողջ բանականության կործանումը). մաթեմատիկան զգալիորեն ընդլայնեց իր կիրառության շառավիղը՝ ըստ էության դառնալով գիտության լեզուն. գիտնականի համար գիտությունը դադարեց իր ամբողջության մեջ տեսանելի, ընդգրկելի լինե-

լուց. կատարվեց ալտերնատիվ իմացական իրավիճակների դերի փոփոխու-
թյուն:

Գիտության մեջ կատարվող փոփոխությունները նշանավորեցին գիտական
նոր մտածելակերպի ծնունդը: Անցումային այդ շրջանում բնագիտությունը և
բնագետները բախվեցին ո՛չ միայն զուտ բնագիտական, այլև աշխարհայաց-
քային բնույթի բարդ պրոբլեմների: Ինչ վերաբերում է բնագիտության բուն
բովանդակությանը, ապա դարասկզբին բավականաչափ լայն տարածում գտած
այն տագնապը կար, թե վտանգված են բնագիտության տեսական հիմքերը: Եթե
վերհիշելու լինենք մաթեմատիկայի հիմունքներում հայտնաբերած պարա-
դոքսները, ֆիզիկայում դասական պատկերացումներին հակասող բազմաթիվ
փորձնական փաստերի հաստատումը (օրինակ, մասսայի աննիհիլյացիայի
փաստը), ապա հասկանալի կդառնա, որ նման տագնապի համար բավականա-
չափ լուրջ հիմքեր կային: Դարասկզբի ֆիզիկայի ճգնաժամը միաժամանակ դրա
աշխարհայացքային հիմքերի ճգնաժամ էր:

Մատերիալիզմ և էմպիրիոկրիտիցիզմ աշխատությունում Վ. Ի. Լենինը շո-
շափեց մարքսիզմի ինչպես սոցիալական տեսության, այնպես էլ իմացաբա-
նության կարևորագույն հարցերը: Այս երկի կառուցվածքը մեծապես որոշվել
է, մի կողմից, այն պրոբլեմներով, որոնք դարասկզբին դարձել էին փիլիսոփա-
յական տարբեր ուղղությունների տաք վիճաբանության առարկա, և, մյուս
կողմից, այն հարձակումներով, որ կատարվում էին մարքսիզմի վրա ամենա-
տարբեր կողմերից ու ամենատարբեր ձևերով: Այս պայմաններում պետք էր
կարողանալ առանձնացնել փիլիսոփայական իմաստավորման ենթակա գլխա-
վոր պրոբլեմները, վեր հանել փիլիսոփաների և փիլիսոփայող բնագետների
աշխարհայացքային սայթաքումների պատճառները, ինչպես նաև մարքսիզ-
մի ննեղափոխման, վերանայման իմաստը, զատելով դրանցում էականը ոչ
էականից, գլխավորը երկրորդականից, որոնք հաճախ պարուրված էին սխո-
լաստիկական երկիմաստ ու անորոշ տերմինների պաճուճանքով:

Իր աշխատությունում Լենինն անդրադարձավ փիլիսոփայական կարևորա-
գույն սկզբունքներից մեկին՝ օբյեկտիվության սկզբունքին, քանի որ վերջինս
տրամաբանական այն կիզակետն է, որտեղ հատվում են փիլիսոփայական
ամեն մի ուսմունքի հիմնարար պատկերացումներն ու ելակետային դրույթները:

Օբյեկտիվության սկզբունքը փիլիսոփայության մեջ նոր չէ: Վերջինս նշա-
նակում է մարդու գիտակցությունից դուրս և անկախ ռեալության գոյության
և գիտակցության մեջ դրա ադեկվատ արտացոլման ընդունում: Այն միմյանց
հետ կապում է արտաքին աշխարհի, ճանաչողության օբյեկտի ու սուբյեկտի
և իմացության պրոցեսի որոշակի ըմբռնումներ: «...Ոչ միայն մարքսիստական,
այլև ամեն մի մատերիալիզմի, «ամբողջ նախորդ» մատերիալիզմի հիմնական
գիրքավորումն» է, «ռեալ օբյեկտների ընդունումը մեզնից դուրս, որոնց «հա-
մապատասխանում են» մեր մտապատկերները» (Վ. Ի. Լենին, ԵԼԺ, հ. 18, էջ
126): Եվ իրոք, մարդու գիտակցությունից դուրս և անկախ օբյեկտիվ ռեալու-
թյան գոյությունը և նրա ճանաչելիության հնարավորությունն ընդունել են
ինչպես հին աշխարհի մատերիալիստները, այնպես էլ նոր ժամանակների մե-
տաֆիզիկական-մեխանիստական մատերիալիզմի ներկայացուցիչները: Սա-
կայն, որքան էլ դա առաջին հայացքից տարօրինակ թվա, այդ դրույթը նոր
ժամանակներում ունեցել է այլ կշռույթ ու նշանակություն: Արտաքուստ նույն
սկզբունքի բովանդակության փոխակերպումը հասկանալու համար այն պետք
է քննարկել անտիկ ու նոր ժամանակների մշակույթների ամբողջ համակար-
գում, հին աշխարհի նաիվ մատերիալիզմի և նոր ժամանակների մետաֆիզի-
կական, հայեցողական մատերիալիզմի համեմատական վերլուծության կոն-
տեքստում:

Հին հույն մատերիալիստների պատկերացումները քննարկվող սկզբունքի
առնչությամբ հիմնական կողմերով հանգել են հետևյալին՝ կա մարդու գիտակ-
ցությունից դուրս և անկախ գոյություն ունեցող իրականություն, բնություն,
տիեզերք, որտեղ գործում են որոշակի օբյեկտիվ օրինաչափություններ. մարդը
ինչպես իր ֆիզիկական, այնպես էլ հոգևոր հատկանիշներով այդ աշխարհի մի
մասն է և ենթակա է բնության մեջ գործող օրինաչափություններին. ճանաչո-



ղության պրոցեսը բնական պրոցեսներից մեկն է և ամբողջովին պայմանա-
վորված է օբյեկտիվ իրականությամբ: Այստեղից բխում է, որ եթե կառուցվի
օբյեկտիվ իրականության ճիշտ պատկերը, ապա այն կներառի նաև մարդուն՝
ֆիզիկական, բարոյական և հոգևոր իր բոլոր կողմերով: Բավական է վերհիշել
այն անմիջական կապը, որ հին մատերիալիստները տեսնում էին ատոմների
ուղղագիծ կամ ոչ-ուղղագիծ շարժման և մարդկային ճակատագրի միջև:

Եթե որևէ մեկը փորձի վերհանել անտիկ աշխարհըմբռնման ու մտածելա-
կերպի ամենաէական գիծը, ապա, ըստ երևույթին, դա պետք է լինի նաիվ և
ծայրահեղ օբյեկտիվության այս ըմբռնումը, որն, այդուհանդերձ, խիստ ար-
դյունաբեր եղավ իր ժամանակների համար և ապահովեց հին աշխարհի մտա-
ծելակերպի միասնությունն ու ներդաշնակությունը: Այս ըմբռնումն իսկ կան-
խորոշեց գոյաբանության և իմացաբանության միասնությունը հին հույն մա-
տերիալիստների մոտ, այնպիսի միասնությունը, երբ իմացաբանությունը
դուրս էր բերվում, արտածվում էր գոյաբանությունից:

Այս ըմբռնումն իսկ էականորեն պայմանավորեց ճանաչողության պրո-
ցեսի ընդհանուր նկարագիրը անտիկ իմաստասերների մոտ: Համարյա բոլոր
ուսմունքների հիմքում ընկած էր այն ենթադրությունը, ըստ որի նույնացվում
էին առարկան և առարկայի մասին գիտելիքը, ինչպես նաև այն կարծի-
քը, ըստ որի բնությունը և այն առարկաներն ու երևույթները, որոնք կազմում
են մարդկային իմացության բովանդակությունը, կան ինքնին ու ճիշտ այն-
պես, ինչպես մենք դրանք ճանաչում ենք: Պատահական չէ, որ հին հույն իմաս-
տասերները, չնայած որոշ կռահումներին (կարելի է հիշատակել «ըստ ճշմար-
տի» և «ըստ կարծիքի» գիտելիքների տարբերակումը Դեմոկրիտի մոտ), չշո-
շափեցին «օբյեկտ-սուբյեկտ» պրոբլեմը, առավել ևս սուբյեկտի ակտիվու-
թյան պրոբլեմը, որը առաջատար տեղ ունի նոր և նորագույն ժամանակների
եվրոպական փիլիսոփայական մտքի պատմության մեջ: Իսկ այս վերջին հան-
գամանքն արդեն պայմանավորված էր այդ ժամանակներում գիտական իմա-
ցության մեջ կատարված արմատական տեղաշարժերով:

Նոր ժամանակներում ճշգրիտ գիտությունների և փորձնական բնագիտու-
թյան զարգացմամբ պայմանավորված գիտելիքների տեսական ու էմպիրիկ
մակարդակների, համընդհանուր և անհրաժեշտ գիտելիքների ներգիտական
ստատուսի, փորձի և տեսության փիլիսոփայական հարցերի քննությունը բա-
ցահայտեց օբյեկտիվության նաիվ սկզբունքի սահմանափակությունը: Պարզ
դարձավ, որ առարկան և առարկայի մասին գիտելիքը նույնական չեն: Տեսա-
կանացված աշխարհը տարբերակվեց այն աշխարհից, որի արտացոլումն է
ինքը: Իմացաբանությունը բաժանվեց գոյաբանությունից: Այս խզումը, որի
համար, ի դեպ, հիմքեր էր տալիս բնագիտությունը, տրամաբանական անխու-
սափելիությամբ դրեց ճանաչող սուբյեկտի ակտիվության, բանականության
դերի փիլիսոփայական հարցերը:

Պատմական օբյեկտիվ պատճառներով նոր ժամանակների մատերիալիզ-
մը, որ իր բնույթով, ինչպես հայտնի է, մեխանիստական, մետաֆիզիկական
ու հայեցողական էր, չէր կարող գիտականորեն լուսաբանել այս հարցերը: Ան-
կարող լինելով իմաստավորել նոր իմացաբանական իրավիճակը, այն ջանաց
զոնե փրկել օբյեկտիվության ավանդական ըմբռնումը: Սակայն իմացաբանա-
կան նոր պրոբլեմների կոնտեքստում այդ դիրքորոշումը անհամոզիչ և անբնա-
կան էր: Այս տեսակետից հին աշխարհի ողջ կուլտուրայի, աշխարհընկալման
մեջ օբյեկտիվության նաիվ ըմբռնումը շատ ավելի ընդունելի էր, քան նոր
ժամանակներում, երբ մետաֆիզիկական, հայեցողական մատերիալիզմն ի վի-
ճակի չգտնվեց մատերիալիստորեն իմաստավորել ճանաչող սուբյեկտի ակտի-
վությունը, տեսական մտածողության և իրականության փոխհարաբերությանը
վերաբերող պրոբլեմները: Պատահական չէ, որ ինչպես նշել է Կ. Մարքսը, այս
պրոբլեմները ամբողջովին մնացին իդեալիզմի իրավասության ներքո, որը
դրանց տվեց զանազան բացատրություններ: Պատմականորեն դրանք համըն-
կան բուռն զարգացող բուրժուական հասարակության շահերին, որտեղ ար-
մատավորվում էր բանականության պաշտամունքը:

Անշուշտ, մետաֆիզիկական մատերիալիզմը ևս ընդունում էր օբյեկտիվ

# ԵՂԻՇԵ ՉԱՐԵՆՑԻ ԼԵՆԻՆԱՊԱՏՈՒՄԸ

ՀՈՎՀ. ՂԱԶԱՐՅԱՆ

> Լե՛նին— այսօր արդեն ասել է գաղափ...
> ՉԱՐԵՆՑ

1.

1917—1921 ԹՎԱԿԱՆՆԵՐԸ սոցիալիստական մեծ հեղաբեկումների ժամանակաշրջան էր՝ լի սխրանքներով, հաղթանակներով, հուսադրումներով: Դարերով անլուծելի հարցերը գալիս, հանգուցվում էին, լուծվում, կամ սպասում լուծման: Պատմությունը հարցը դարձրել էր հրամայական՝ հեղափոխության հետ, կամ նրա դեմ, իսկ հայ ժողովրդի համար նշանակում էր փրկություն, կամ բնաջնջում:

Հայ ժողովուրդն իր հայացքը հառում էր դեպի հեղափոխությունը, հեղափոխության առաջնորդ Լենինը, հեղափոխության մեջ, նորաստեղծ Սովետական Ռուսաստանի մեջ միայն տեսնում իր փրկությունը:

Հեղափոխական իրադրությունը, սակայն, հեղափոխական իրականություն կարող է դառնալ մի դեպքում միայն, ավանդում էր Լենինը, երբ խելացիորեն, ամենաստույգ միջոցներով և կազմակերպված են օգտագործվում հեղափոխական իրադրության բոլոր միջոցները, սուբյեկտիվ գործոնը նաև, երբ «օբյեկտիվ փոփոխություններին,— ասում էր Լենինը,— միանում է սուբյեկտիվը...»:

Այստեղ, ահա, հեղափոխական իրադրությունը հեղափոխական իրականություն դարձնելու սուբյեկտիվ գործոնի ակտիվացման ու հեղափոխականացման մարզում մեծ ու անփոխարինելի դեր են խաղում նաև հայ պրոլետգրողները, մարքսիստ քննադատները, դասականների մեծագույն ու լավագույն մասը, գրական նոր սերունդը. նրանք ընտրում էին կեցության սոցիալիստական ուղին, անվերապահորեն պաշտպանում Հոկտեմբերյան նվաճումները:

1917—1921-ին հայ բոլշևիկյան մամուլում Հոկտեմբերը ներկայացվում է որպես «Համայն մարդկության երջանկության ավետաբեր» (տե՛ս «Բանվորի կռիվը», 1917, № 62), Լենինը՝ հեղափոխության հանճարեղ առաջնորդ. «Լենինը շատ պայծա՜ռ է և զարմանալի... և պարզ»,— 1917-ի իր նամակներից մեկում ասում էր Տերյանը: Պատմության իրադարձությունների անկասելի ուժով, Լենինի ջերմ շնչի տակ, նրա իսկ ղեկավարությամբ, Տերյանը ծավալում է պետական մեծ գործունեություն, թարգմանում Լենինի Պետություն և հեղափոխություն կապիտալ աշխատությունը նաև, թարգմանում այն պահին, երբ, նկատում էր Ալեքսանդր Մյասնիկյանը, «հայ ժողովուրդը տնքում էր հայ և եվրոպական ենիչերիների դժնդակ լծի տակ», թարգմանում որպես «հեղափոխության պատգամ հայ պրոլետարիատին» (Ընտիր երկեր, Ե., 1957, էջ 272): «Ես անչափ երջանիկ եմ,— ազգային հպարտության զգացումով էր վերհիշում Մյասնիկյանը,— որ



շրջել եմ Լենինի հետ միասին, եղել եմ այդ հսկայի, մեր ժամանակի հանճարի հետևորդն ու փոքր աշակերտը»:

Լենինի հանդեպ սրբազան զգացմունքը փոխվում էր ցնծագին գովերգության.

> Սա ճանճա՞ր է մի, թե զորավոր ֆաչ,
> Որ պաշտամունքը դարձավ ամենքի,—

1919-ին հնչում էր Հակոբ Հակոբյանի ձայնը: Լենինը ներկայացվում էր իբրև

> Ուղեցույց փարոս համայն մարդկության...

Լենինի կյանքը, նրա մեծ անհատականությունը ներկայացվում էր իբրև լեգենդ: «Ահա նրա կյանքը,— գրում էր Սուրեն Սպանդարյանը...— Նրա դեմքին պայքարի հրճվանքն է, աչքերում— սրբազան հավատը, շուրթերին— խիզախումը՝ առաջ և առաջ... Նա հարազատանում է միայն հզոր փոթորիկների հետ, և մեծ օվկիանոսի ալիքների հետ. նա գիտի միայն մեկ երգ՝ աշխատանքի, հաղթանակի երգը... մասսաների շարժումը— ահա նրա տարերքը: Մասսաների հաղթանակը— ահա նրա ուրախությունը» («Կավկազսկայա կրասնայա արմիա», 1918, № 1):

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության հզոր շնչի տակ, 1917—1921 թվականներին, տեղի էր ունենում պատմական մի նշանակալից պրոցես ևս— սովետական հայ գրականության կազմավորման պրոցեսը:

Սովետական գրականությունը, ուրեմն, կազմավորվում էր ո՛չ միայն բուն Ռուսաստանում, Ուկրաինայում, Բելոռուսիայում, ուր արդեն սովետական կարգեր էին հաստատված, այլև Ռուսաստանի ծայրամասերում, Հայաստանում, երբ հայ ժողովուրդը տակավին թպրտում էր դաշնակների իշխանության ներքո: Սովետական գրականության ծնունդն էին նշանավորում Մ. Գորկին, Վլ. Մայակովսկին, Դ. Բեդնին, Վ. Բրյուսովը, Ալ. Բլոկը՝ Ռուսաստանում, Պ. Տիչինան, Վլ. Սոսյուրան՝ Ուկրաինայում, Յա. Կուպալան, Յա. Կոլասը՝ Բելոռուսիայում, իսկ հայ գրականության մեջ՝ Ե. Չարենցը, Վ. Տերյանը, Հ. Հակոբյանը:

«Ասելով «անցյալ»,— գրում էր Չարենցը,— մենք այսօր պատկերացնում ենք այն ամենը, ինչ որ գտնվում է 1917-ի Հոկտեմբերից այն կողմ: Պրոլետարական հեղափոխության հատու սուրը մի կարմիր խազ քաշեց օրերում ու ժամանակներում այն ահեղ թվականին...» (ԵԺ, հ. VI, էջ 80): Պրոլետարական հեղափոխության հատու սուրը, արդարև, «մի կարմիր խազ քաշեց» նաև մեր անցյալի՝ նախահոկտեմբերյան և հետհոկտեմբերյան՝ նորագույն գրականության միջև, որն իր թեմատիկ-գաղափարական բովանդակությամբ, իր արվեստով, գեղագիտական-փիլիսոփայական հիմքով բոլորովին նոր էր՝ սովետական-սոցիալիստական:

Հոկտեմբերյան մատույցներում՝ պատմական խոր մի օրինաչափությամբ, հեղափոխության հզոր շնչի տակ, ուրեմն, միաձուլվում-միաձուլվում էին հայ բազմադարյան և նոր կազմավորվող սովետահայ գրականության ավանդները:

Հակոբյանական զուտ պրոլետարական գրականության շեփորը վերաճում էր չարենցյան հեղափոխական պոեզիայի հզոր սիմֆոնիայի՝ իր մեջ առնելով ազգային հազարամյա գրականության առաջավոր ու կենսունակ ավանդները:

Չարենցի ռադիոպոեմների, Տաղարան շարքի հետ ներդաշնակորեն ու մի առանձին ուրույնությամբ և անկրկնելի հմայքով հնչում էին նաև Թումանյանի քառյակները, լեգենդները, Իսահակյանի պոեմները, Տերյանի, Հակոբյանի հոկտեմբերյան ցնծագին երգերը: Մի կողմից՝ խոր ակնածանք հայկական դասական քնարերգության (Նարեկացի, Քուչակ, Սայաթ-Նովա) հանդեպ, մյուս կողմից՝ դրանով իսկ բեղմնավորված սովետական հայ գրականության արարում: Եվ այնքա՜ն ներդաշնակ ու միակտուր էին միահյուսվում— միաձուլվում «հինը» և նորը, արվեստի «հին» և նոր արտահայտչաձևերը, և այնքա՜ն օրգանապես էին թափանցում մեր դասական ռեալիզմի վսեմ հումանիզմը և պրոլետարական ինտերնացիոնալիզմը, մասնավոր սեփականության վրա կառուցված բուրժուա-

անորոշ ու տարտամ՝ «անմխիթար զառանցանք», «հավերժական մի փնտրում». «Մենք չգիտենք, քո՛ւյր իմ, մեզ կապույտը ո՞ւր կտանի»:

Այսպիսիք էին Չարենցի տրամադրությունները նախահոկտեմբերյան տարիներին՝ «սերը... արցունք ու արյուն», մահվան շուրջը հածող մղձավանջային զգացմունքներ:

Հաղթահարելով «հավերժական կապույտին» միտող իր վաղ շրջանի դեգերումները՝ Չարենցը դարձավ Հոկտեմբերյան գրականության պատգամախոս. Հոկտեմբերը բացահայտեց Չարենց-բանաստեղծի պոտենցիալ հանճարը:

Սոցիալիստական հեղափոխության օրըստօրե խորացող իրադարձությունների շիկացած մթնոլորտում փոխվում էր բանաստեղծի պատկերավորման գունային աշխարհը նաև՝ սկզբում դանդաղ, այնուհետև՝ շեշտակի: Չարենցի պոետիկայում բնության գույներն ու երանգներն առնում են նոր իմաստ՝ համապատասխան բանաստեղծի հեղափոխական պայծառ հայացքներին: Կապույտին փոխարինում է կարմիրը, իբրև սոցիալիստական հեղաշրջումների, կյանքի նորոգման խորհրդանիշ:

Եկել— երկաթե երգ եմ ձեզ ասում
Ես— կարմիր պոետ— Եղիշե Չարենց:

Կարմիր գույնի միջոցով էլ բանաստեղծը ներկայացնում է գարունը, ապագան, արևը. «Կարմիր վառվեց արևը բորբ, որպես կռվի ազդանշան»:

Կարմիրը Չարենցի պոետիկայում դառնում է սոցիալիստական բովանդակությունն արտահայտող տիրական գույն, գեղեցիկ ու կենդանի պատկերների, թևավոր արտահայտությունների հիմք. «Մեր կամքը հիմա, որպես վիթխարի մի կարմիր դրոշ»: Կարմիր գույնի վրա են կառուցվում Չարենցի հարյուրավոր պատկերները, այլև բանաստեղծություններ՝ հեղափոխությունը խորհրդանշող կրակի, հրդեհի, հողմի, մրրիկի, նժույգի մետաֆոր-պատկերների համադրությամբ: Բանաստեղծն իր ժողովրդի հեղափոխական կամքն ու խանդավառությունն արտահայտում է դարձյալ կարմիր բառապատկերի միջոցով:

Եվ ո՞վ, ո՞վ կասի՝
Նետե՞լ է արդյոք մեկը աշխարհում
Այսօրվա կարմի՛ր, կարմիր ձեր երկրին
Ողջույն— ավելի՛, առնական, արի,
Քան ողջույնը քո, Երկիր արնաքամ,
Կարմիր Նաիրի...

Չարենցի կերպար-պատկերներում ևս փոփոխություններն ակնհայտ են. նախասովետական փուլին բնորոշ «լուսամփոփի պես աղջիկ», «աստղային քույր» քնարական-եթերային կերպարներում դարձյալ արտահայտվում են բանաստեղծի սիրո անորոշ ու թախծագին խոկումները:

Չարենցի կերպարը լցվում է կենդանի շիթով, երբ նա անցնում է Արևմտյան Հայաստանի մարտադաշտերով, հասնում Կարսից Վան, որպես մարտիկ և ականատես դժոխային կոտորածների, լցվում տագնապով բնաջնջման առաջ կանգնած իր ժողովրդի ճակատագրի հանդեպ, իսկ այնուհետև, 1916-ից մեկնում է Մոսկվա, ապրում հեղափոխական իրադարձությունների փոթորկուն կյանքով: Կամավոր Չարենցը դառնում է կարմիր զինվոր, անցնում քաղաքացիական կռիվների ռազմադաշտերով, դառնում կոմունիստ. «...սիրտս ուշում է հպարտությունից,— ասում է նա,— որ բոլշևիկ եմ, կոմունիստ, լենինյան կազմակերպության անդամ»: Այսպես, ահա, կերպարը լցվում է կենսական հյութերով ու թրթիռներով, արտահայտում իրականության մեծ ռիթմը, ներկայացնում հայոց կյանքը՝ հոգեվարքի մեջ.

Հոգուս մեջ կարծես հնոցներ կային,
Ու աչքերիս մեջ— խարույկներ լափլեզ:

Այսպես է ծնվում Սոմա՝ ազատության աստվածուհու, խելագարված ամբոխների հավաքական կերպարը նաև— սոցիալական բազմատարր զանգված-



ներ, հեղափոխության բախտը բարիկադներում որոշող համաժողովրդական ինքնաճանաչ ուժեր՝ անպարտելի, հզոր.

Երբ ուզեն՝ արևներին նոր տե՛մպ կտան ու նոր ուղի...

Այդ կերպարներում զգացվում է ժամանակաշրջանի ահեղ շունչը, այն հաստատուն հավատը, որ սոցիալիստական հեղափոխությունը փրկելու է ո՛չ միայն Ռուսաստանը, այլև նրա հովանու ներքո ապրող փոքր ժողովուրդներին, այլև ողջ մարդկությանը. «Դեմս— հողմակոծ աշխարհն է անծայր...»: Այդ հողմակոծ աշխարհի դիմաց կանգնած է, ահա, բանաստեղծը, որպես ռադիոկայան՝ «բոլո՛ր սրտերին... բոլո՛ր կողմերով» ուղարկելով իր «Հրակարմիր երգը», «բոլո՛ր սրտերին... բոլո՛ր կողմերում» հաղորդելով Հոկտեմբերյան օրերի «խորհուրդը մեծ, խորհուրդը հսկա»: Ռուսաստանի տառապած ու ըմբոստացած բոլոր ազգերը, տառապած ու ըմբոստացած բոլոր մարդիկ գալիս, համախմբվում են հեղափոխության վառ դրոշի ներքո, դառնում մեծ, դառնում անչափելի ու անպարտելի ուժ:

Ո՞վ ունի այսօր կամքը մեր հրե,
Ուժը մեր բռունց
Ու վառ բախտը մեր
Տիեզերական:
Ո՞վ ունի այսօր...
Մենք ենք, որ նո՜ր ենք, հազա՜ր ենք ու բյո՛ւր:

Բանաստեղծական այս չափատողերով, որ ասես այսօր են կերտված, հաղթահարվում էր հայ պրոլետարական գրականության միակողմանիությունը, կոսմոպոլիտիզմը, ազգային նեղ տեղայնությունը: Բուն ազգային կյանքի, ծվատված հայրենիքի ու հայ ժողովրդի միջով էր Չարենց-արվեստագետը գնում դեպի հեղափոխությունը, համաժողովրդականը, համամարդկայինը, դեպի պրոլետարական ինտերնացիոնալիզմը:

Չարենցի մեծությունն այն է, որ հայ դարավոր ժառանգությունը դիտում է հեղափոխության լույսի ներքո, հեղափոխության ուժով երաշխավորում և իմաստավորում. իր մեջ օրգանապես մարմնավորելով հինը և նորը՝ սոցիալիստական բովանդակությամբ նորոգում և թարմացնում է մեր դասական արվեստի բազմադարյան զինանոցը.

Ե՛ս— ե՛ս եմ նորից.—
Դարերից եկած անհո՜ւն մի պոետ—
Եղիշե Չարենց—
Նաիրի երկիր, քո երգիչը վառ,
Օրհներգուն պայծառ
Ու զավակը մեծ...
Ե՛ս— ե՛ս եմ նորից—
Ոսկի երակը հնամյա ցեղիս...

Չարենցը, ուրեմն, այն ոսկե կամուրջն է, որով միավորում է անցյալի ժառանգության լավագույնը սոցիալիստական հեղափոխությանը, ծառայեցնում նրան: Հայրենիքը և հեղափոխությունը Չարենցի պոեզիայում գալիս միանում են մի ամբողջության մեջ, իբրև ազգային նվիրական, համապարփակ իդեալ: Չարենցի պոետական կերպարում, այսպիսով, համադրվում են հազարամյակների ազգային մշակույթը և հեղափոխությունը, Սովետական Ռուսաստանը և հարազատ հայրենիքը ու ինքը բանաստեղծը՝ հայացքը հառած ապագային:

Կապել եմ կյանքս Գալիքի հետ վառ—
Եվ կռում եմ իմ մեծ, հսկա սրտում—
Մի երկաթակուռ, նո՜ր, հզո՜ր աշխարհ:

Նա խստագույնս դատապարտում է «մարդուց ու հողից», կոնկրետությունից, իմաստից և հույզից զուրկ «նորաձևությունները». «Ճր»-եր, «գր»-եր, «կր»-եր շարելը դեռ ֆորմալ նվաճում չէ,— ասում էր Չարենցը Գ. Աբովի «Դանակը բկին» բանաստեղծությունների ժողովածուի մասին իր գրախոսականում։— Դրանք այն ժամանակ միայն իմաստ կունենային, եթե բխեին բովանդակությունից (ինչպես Մայակովսկու մոտ)։ «Այո,— ընդհանրացնում է բանաստեղծը։— Բովանդակությունից պետք է բխի ֆորմալ ամենաչնչին նորությունն անգամ» («Նորք», 1923, 2-րդ գիրք)։

Այդ սկզբունքը, այսինքն այն, որ «բովանդակությունից պետք է բխի ֆորմալ ամենաչնչին նորությունն անգամ» դառնում է Չարենց-արվեստագետի առաջնորդող սկզբունքը։ 20-ական թվականների կեսից ու այնուհետև Չարենցը՝ լիապես և ամբողջապես, հաղթահարում է իր ֆուտուրիստական մոլորությունները, այլև վաղ շրջանի պոռթկումներն ու անփորձությունները, թևակոխելով ստեղծագործական զարգացման ամենահասուն, ամենաբեղուն շրջափուլը՝ ստեղծելով «Էպիքական լուսաբաց», «Գիրք ճանապարհի» դարակազմիկ երկերը, որոնցով, իրավ, խորհրդանշվում է ազգային մեծ արվեստի— սոցիալիստական ռեալիզմի զարգացման էպիկական լուսաբացը, իրավ, նոր ու բարձր չափանիշներ սահմանվում։

Իմ հոգին այսօր էլ չի՛ մանրանում,
Չի՛ մսխում իրեն բովոում խոսքով—
Այսպես ցողո՛ւմն է հանդում ծանրանում,
Երբ լցվում է ծույլ, իմաստուն հասկով։
Ես այն չեմ հիմա... Հույզերիս քամին,
Որ Փչում էր ինձ անկումից-անկում—
Հանգստացել ու հասել է հիմի
Եվ ամեն կանչի չի՛ արձագանքում։—
Էլ չի՛ հոսում սիրտս վայրենի,
Ինչպես դաշտերում հծույզ սանձարձակ.—
Գգվեց ինձ սիրով մի ձեռք հայրենի,
Եվ ես մի գիշեր իմաստուն դարձա։

Այս իմաստուն խոհերի ու ծիրուն ազնիվ զգացումների ծնունդ են Չարենցի նոր երգերը, պոեմները, բալլադները ու նաև՝ ներբողները, պատումները Լենինի մասին, երգեր, որ միաժամանակ գեղագիտության բարձր չափանիշներ են դառնում։ Դրանցում հնչում է նոր կյանքի, վերածնված սոցիալիստական հայրենիքի աշխատանքային մեծ առօրյայի հզոր ռիթմը, դրանցում մարմնավորվում են ռեալիզմի ռեմբրանդտյան խտագույն գույները։ Այսպիսով է ահա Չարենցը ստեղծագործաբար հաղթահարում իր ցավալի մոլորությունների ու թուլությունները, Ամենապոեմի առաջին տարբերակից հասնում երկրորդը, Ես և Իլյիչը ֆանտաստիկայից՝ Լենինն ու Ալին բալլադը, Ռոմանս անսերից՝ Կանգրաներ տղան, Խմբապետ Շավարշը։

Այսպես են ծնվում նաև Լենին ներբողը, Լենին Հեռին, Բալլադ Վլադիմիր Իլյիչի, մուժիկի և մի զույգ կոշիկի մասին պատումները, Մենք փող զարկինք մահվան բայլերգը։ Դրանք իրական հիմքի, լեգենդար ուժ ստացած իրողությունների վրա կառուցված սրտահույզ պատումներ են, դրանցում ամենավառ պատկերներով ու կերպարներով դրսևորվում են լենինյան գաղափարների պանծացումը, լենինյան պատգամների ամենահաղթ ուժը, Լենինը՝ որպես մարդկության խիղճ։

Սերը Հայրենիքի, ժողովրդի հանդեպ, նվիրական ու խելահեղ սերը Չարենցին կրկին ու անվերապահ մղում է դեպի Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը, մղում դեպի հեղափոխության մեծ առաջնորդ Լենինը։ Չարենցի մտապատկերներում ու զգացումների հորձանուտի մեջ Լենինը ներկայանում է որպես հայր, ամենահարազատը կյանքում, որպես այգ՝ ամենագեղեցիկը աշխարհում, ակունքը կյանքի, լույսի, հավերժության։

Չարենցի ստեղծագործության մեջ Լենինը ներկայացվում է իբրև համաշխարհային հեղափոխության երևույթ.



Անգամ չրկիրը Տիբեթի
Տվել է Իլյիչի ուղեղին
Մի բել...,—

Իսկ լենինյան ավանդները՝ որպես հաղթանակող պատմական անխուսափելի ճշմարտություններ.

Դեռ կգա Իլյիչը,
Ու մանի համաշխարհային Սովնարկոմ։

Լենինի թաղումն իսկ վերաճում է այգի, այգը՝ որպես խորհրդանիշ գեղեցկության, ուժի, կենսունակության. մայրամուտից-այգ՝ կյանքի մշտահոլով, մշտանորոգ վերածնումն է, անվախճան մի արարում, որին իր կաթոգին հայացքն է հառում ողջ մարդկությունը, իսկ բանաստեղծին մղում վաստակումների «անեզրական հեռուն»։

„Ars poetica„ -ում (1928) Չարենցը հանրագումարի է բերում իր վերապրածի փորձը։ Նա պահանջում է կյանքի հակասական, բարդ ու նրբին երևույթները, սոցիալիստական գեղագիտական իդեալը բացահայտել արվեստի ամենաբարձր չափանիշներով՝ լենինյան չափանիշներով.

Լե՛նին— այսօր արդեն ասել է—դագաղ,
Ասել է— ներքի՛ն կառուցում քո նոր թեմայի։
Այդ թեմա՛ն ուռճանում է այսօր քո մեջ,
Աճում է, բայց ո՛չ այնպես, ինչպես խոտը.
Նա անում է կամքո՛վ, երկաթո՛վ,— նա կյանքի՛ առավոտ է
Մտքի, խոսքի, կառուցման անհուն ելևէջ...

Չարենցը դարձյալ ու դարձյալ անհրաժեշտ է համարում հաստատապես դիմել գրական մեծություններին ու գրական առաջավոր ավանդներին, հասկանալ ստեղծագործող տիտանների կախարդական ուժը, հասկանալ Պուշկինին, Շեքսպիրին ու Դանթեին, հասկանալ Թումանյանին։ Նա անհրաժեշտ էր համարում քախել «բյուրավոր դուռ»։ Վերջնականապես ու խոր մի իմաստությամբ նա ըմբռնում է նաև այն մեծ ճշմարտությունը, որ առանց ճանաչելու կյանքը, առանց իմանալու մարդկային ծփացող հույզերի մեծ աշխարհն այնպիսի խորությամբ ու այնքան լավ, «որքան մժեղի մկանը ծանոթ էր Ֆաբրին», անհնարին կլիներ հասնել արվեստի բարձունքները։ Անհրաժեշտ է, ուրեմն, եզրակացնում է Չարենցը, հազարավոր թելերով և օրգանապես կապվել անցյալին ու ապագային։

Ճանապարհին այս մեծ, այս վերելքին անեղ
Մենք չե՛նք հոգնի երբեք, չե՛նք կորցրնի ուղին,
Չկտրվենք երբ սերունդների հողից,
Սերունդների՛ աչքով թե մեր երթին նայենք...

Ստեղծագործական մեծ փորձը բանաստեղծին բերում էր այն հաստատուն համոզմունքին նաև, որ առանց խոսքի հմուտ վարպետության հնարավոր չէ հաղթահարել զգացմունքների ու մտախոյանքների տարերքը, հնարավոր չէ հաղթահարել անցյալի ժառանգության հսկայական բեռ-հարստությունը, «հիմնականը մանրից» զատել և գալիք սերունդներին հասցնել արվեստի նվիրական ու մնայուն հուշարձաններ.

Թե ուզում ես, որ խոսքդ կտրի հորիզոններ, դաշտեր,—
Պիտի վարպետ լինել անօրինակ բափի,
Ինչպես Լենինը— ապստամբության, ինչպես էյնշտեյնը—
Թվի, տարածության, ձգողության, չափի։

Այսպիսով է, ահա, որ Չարենց-արվեստագետը՝ համամարդկային, ինտերնացիոնալիստական իր խոհերով ու զգացումներով ճեղքում է ազգային պատնեշները, դուրս գալիս համամիութենական, համաշխարհային ասպարեզ։

# Ապրել, աշխատել և մաքառել լենինաբար

**Տասներորդ հնգամյակի չորրորդ տարին ևս աշխատանքային սխրանքների ժամանակահատված եղավ մեր հանրապետության համար: Ձեռք բերած բարձր արդյունքներով համամիութենական սոցիալիստական մրցությունում հաղթող ճանաչվեցին և ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշով պարգևատրվեցին Հայկական ՍՍՀ-ն, Երևան և Կիրովական քաղաքները, Ախուրյանի, Նոյեմբերյանի և Հրազդանի շրջանները, մի խումբ կոլեկտիվներ: Առաջավոր կոլեկտիվների մի մասն արժանացավ նաև ՍՍՀՄ ԺՏՆՑ-ի պատվո տախտակին գրանցվելու պատվին:**

**Բարձր պարգևը աշխատավորների գործադրած հսկայական ջանքերի, լենինաբար ապրելու և աշխատելու համար նրանց ծավալած պայքարի արժանի գնահատանքն է:**

**Ոգևորված բարձր պարգևով և մրցություն ծավալելով ի պատիվ ժողովուրդների մեծ առաջնորդ, կոմունիստական կուսակցության և սովետական պետության հիմնադիր Վ. Ի. Լենինի ծննդյան 110-ամյակի, հանրապետության առաջավոր կոլեկտիվները շարունակում են իրենց աշխատանքային խիզախումների երթը և արժանի ավանդ ներդնում ՍՄԿԿ XXV համագումարի առաջադրած սոցիալ-տնտեսական խնդիրների հաջող լուծման, տասներորդ հնգամյակի արդյունավետ ավարտման գործում:**

**Ստորև հրապարակում ենք նյութեր՝ համամիութենական պարգևի արժանացած մի քանի առաջավոր կոլեկտիվների լավ գործերի մասին:**

## ՄԵՐ ՊՂՆՁԱՎԱՆՑԻՔ

*ԵՏՊԱՏԵՐԱԶՄՅԱՆ ՏԱՐԻՆԵՐԸ Ալավերդու մետալուրգների ու քիմիագործների համար լարված աշխատանքի ու իսկական վերելքի շրջան էր: Գործարկվեցին նոր բաժանմունքներ, պղնձի ռաֆինացման արտադրամասը: Այդ ամենի շնորհիվ ալավերդցիներն առաջին անգամ հնարավորություն ստացան կիրառելու պղնձի արտադրության լրիվ ցիկլը: Դա խոշոր նվաճում էր, սակայն խնդիր էր դրված ավելացնել պղնձի արտադրությունը: Այդ նպատակով անհրաժեշտ եղավ իրականացնել նոր վերակառուցումներ, գործարկել նոր կարողություններ, մեծացնել արտադրական հզորությունները:Եվ ձուլող վառարանների ու գործող արտադրամասերի կողքին վեր խոյացան նորերը, ձեռնարկությունը տեխնիկապես զինվեց, հագեցավ բարձրարտադրողական նոր մեքենասարքավորումներով:*

*Ամբողջ երկիրը մասնակցեց լեռնամետալուրգիական կոմբինատի վերակառուցմանը: Համարյա բոլոր հանրապետություններից ստացվեցին շինանյութեր ու տեխնոլոգիական սարքավորումներ: Երկրի տարբեր ծայրամասերից այստեղ ժամանեցին լավագույն կառուցող մասնագետներ: Նրանցից շատերը կոմբինատի վերակառուցման տարիներին փառավոր էջեր գրեցին: Արդյոք կարելի՞ է մոռանալ Կրեմենչուգ քաղաքից գործուղված մոնտաժողների բրիգադի անդամներին, որոնց ղեկավարում էր Վլադիմիր Յակոբչուկը: Կառուցում սխրանքներ գործեցին Նովոսիբիրսկից ժամանած Սեմյոն Մալցերի, Կեմերովոյից՝ Ալբերտ Միրոնովի, Լուգանսկից՝ Եֆիմ Ռուլոյի ղեկավարած բրիգադների մոնտաժողները: Աշխատանքի հիանալի օրինակ ցույց տվեցին Անգարսկից եկած աղջիկները՝ Ելենա Տելեկովան, Վալենտինա Մորոզովան, Անտոնինա Լարչենկոն, շատ ուրիշներ:*

*Ներկայումս լեռնամետալուրգիական կոմբինատում արտադրությունը վարվում է գիտական հիմունքներով: Կազմակերպվել է պղնձի խտանյութի կիզումը եռման շերտում, ցածրարտադրողական աշտարակային եղանակով ծծմբաթթվի ստացումը փոխարինվել է կոնտակտայինով, ավելացել է կոնվերտորների քանակը և, որ ամենագլխավորն է, ալավերդցիները Միության մեջ առաջինն սկսեցին կիրառել պղնձի շիկացած խտանյութի էլեկտրական ձուլման եղանակը: Դա արտադրությունը գիտականորեն վարելու նոր մեթոդ է, մեծ առաջընթաց: Սակայն վերակառուցման ու վերափոխման հետևանքով կոմբինատը կանգնել էր լուրջ դժվարությունների առջև: Այդ առնչությամբ էլ պղնձագործների փառաբանված կոլեկտիվի առջև ծառացան նոր խնդիրներ. լիովին օգտագործել գործարկված նոր արտադրական կարողությունները, վերացնել կրկնվող վթարներն ու պարապուրդները, կոմբինատի տևական ետ մնալը հաղթահարելու համար գործնական քայլեր անել:*

*Աշխատանքի լավ ավանդույթներ ունեցող այդ կոլեկտիվի կուսակցական կազմակերպությունը, որը միավորում է ավելի քան 500 կոմունիստների, նրա կոմիտեն բարձրացրին կադրերի ու բոլոր կոմունիստների անձնական պատասխանատվությունը վստահված գործի նկատմամբ, արտադրամասային կուսկազմակերպությունների ուշադրությունը հրավիրեցին պլանների ու ստանձնած սոցիալիստական պարտավորությունների կատարման, մրցության հրապարակայնության ապահովման, առաջավոր փորձի ընդհանրացման ու տարածման վրա:*

*Այդ ամենն, անշուշտ, իր բարերար ներգործությունն ունեցավ արտադրության կազմակերպման, պլանների կատարման վրա: Եվ պատահական չէ, որ կոմբինատը տասներորդ հնգամյակի առաջին օրերից սկսեց աշխատել համաչափ, կատարել ու գերակատարել պլանային առաջադրանքները և վերստին համամիութենական ճանաչման արժանանալ: Ձուլողները, քիմիագործները, լեռնագործներն ու ֆլոտատորները մեկ անգամ չէ, որ նվաճել են Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդի գունավոր մետալուրգիայի վարչության, ՍՍՀՄ գունավոր մետալուրգիայի մինիստրության և ճյուղային արհմիության Կենտկոմի փոխանցիկ դրոշներ: Բայց ամենամեծ պարգևը ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշն է, որին կոլեկտիվն արժանացավ ինչպես 1978-ին, այնպես էլ 1979-ին՝ համամիութենական սոցիալիստական մրցությունում հաղթելու, տեխնիկատնտեսական բարձր ցուցանիշների համար: Երկու անգամ նրա անունը գրանցվեց ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության նվաճումների ցուցահանդեսի համամիութենական պատվո տախտակին:*

*Հնգամյակի անցած չորս տարիներին կոմբինատը պլանից դուրս տվեց մի քանի միլիոն ռուբլու պղինձ ու քիմիկատներ, տնտեսեց 23 միլիոն կվտ-ժամ էլեկտրաէներգիա, մոտ չորս հազար տոննա պայմանական վառելանյութ: Այդ ժամանակամիջոցում զգալիորեն աճեց աշխատանքի արտադրողականությունը, մի քանի միլիոն ռուբլու հասան արտապլանային օգուտները: Հնգամյակի չորրորդ տարում կոմբինատի թողարկած վայրբրարսային պղինձն արժանացավ որակի պետական նշանի:*

*Միութենական բարձր պարգևը կոմբինատի մարդկանց սխրագործ աշխատանքի բարձր գնահատականն է, մարդիկ, որ զոր ու գիշեր կռել են այդ հաղթանակը:*

*Իր գիտակցական կյանքի 45 տարիներն Արշակ Ղազարյանը նվիրաբերել է գունավոր մետալուրգիայի զարգացմանը: Նա առաջինն է, որ կոմբինատի բազմահազարանոց կոլեկտիվում արժանացել է սոցիալիստական աշխատանքի հերոսի կոչման: Ա. Ղազարյանին շնորհվել են նաև պատվավոր մետալուրգի*

և Հայկական ՍՍՀ պետական մրցանակի 1978 թվականի դափնեկրի կոչումներ: Այդ տարիներին վաստակաշատ մետալուրգը անընդմեջ աշխատել է մետալուրգիական արտադրամասում և ներկայումս էլեկտրավառարանի առաջավոր ավագ ձուլողներից է: Վարպետ-դաստիարակ է նա, որի տասնյակ սաները դարձել են արտադրության իսկական հրամանատարներ: Թեև ժամանակն է վարպետին արժանի հանգիստ վայելելու, բայց նա իր կյանքն առանց աշխատանքի չի պատկերացնում և մնում է իր գործին:

Այդ նույն արտադրամասի վետերաններից է և Տելեմակ Ստեփանյանը, որը երկարատև ու անբասիր աշխատանքի համար արժանացել է Աշխատանքային կարմիր դրոշի ու Հոկտեմբերյան հեղափոխության շքանշանների: Նա իր գիտելիքներն ու աշխատանքային հարուստ փորձը սիրով հաղորդում է երիտասարդ ձուլողներին:

Քսան տարվա ազնիվ ու վաստակաբեր աշխատանքի ստաժ ունի էլեկտրավառարանի ձուլող բանվոր Սեյրան Քոչինյանը: Անվանի ձուլողին աշխատանքային ընկերներն առաջադրեցին ՍՍՀՄ Գերագույն սովետի դեպուտատության թեկնածու, իսկ համապատասխան օկրուգի ընտրողներն իրենց միաձայն քվեներով հաստատեցին, որ նա արժանի է այդ բարձր պատվին: Եվ հիմա Ս. Քոչինյանը մեծ նվիրվածությամբ ու պատասխանատվությամբ է կատարում դեպուտատի իր պարտականությունները:

Պղնձագործ մարդկանց հինավուրց փառքը շարունակում են սերունդները: Կադրային բանվոր էր Գալուստ Աթիկյանը: Վաղուց չկա այդ աշխատասեր մարդը, սակայն նրա գործը շարունակում են: Դեռևս կոմբինատում աշխատելիս նա ձուլարան տարավ իր որդուն՝ Ազատին: Արդեն երեք տասնամյակ է, ինչ Ազատը շարունակում է հոր գործը: Նա առաջիններից է արժանացել պատվավոր մետալուրգի կոչման, պարգևատրվել Հոկտեմբերյան հեղափոխության շքանշանով: Կոմբինատում իր աշխատանքային կենսագրությունն է սկսել անվանի ձուլողի որդին՝ Կարոն: Դա Աթիկյանների երրորդ սերունդն է, որ անդամագրվել է մետալուրգների փառավոր կոլեկտիվին:

Ձեռնարկության ձեռք բերած հաջողություններում իրենց արժանի ավանդն ունեն Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի դեպուտատ Փաշիկ Զավարյանը, Վազգեն Ղուշչյանը, Վոլոդյա Սմբատյանը, Մելիք Շախկուլյանը, Ռաֆիկ Սիմոնյանը, Լեոնիդ Իվանովը, Ահմեդ Կարաևը, Ապրո Պապյանը, Վանիկ Թեյմուրազյանը և հարյուրավոր ուրիշներ: Ինտերնացիոնալ համերաշխ կոլեկտիվի համարում ունեն պղնձագործները: Եվ դրա արմատները հասնում են տարիների խորքերը: Ինչպես անցյալում, հիմա էլ այս հզոր ձեռնարկության արտադրամասերում, հայերի հետ կողք-կողքի աշխատում են մեր անծայրածիր երկրի տասնյակ ազգերի ու ազգությունների ներկայացուցիչներ: Ահա նրանցից մի քանիսը՝ ռուս Տիմոֆեյ Զադորկինը, ադրբեջանցի Ահմեդ Կարաևը, ուկրաինացի Նիկոլայ Իգնատենկոն, վրացի Ասլան Կացիտաձեն, հույն, Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի դեպուտատ Մարտին Յանգաբուզովը և շատ ուրիշներ: Եվ բոլորն էլ առաջավոր ու բարեխիղճ, իրենց գործին նվիրված ու նրանով ապրող մարդիկ են, որ աշխատում ու պայքարում են լենինաբար՝ հանուն հայրենիքի բարգավաճման:

Շուրջ երեք տասնամյակ կոմբինատի կոլեկտիվը բարեկամական կապերի ու սոցիալիստական մրցության մեջ է եղբայրական Վրաստանի Զեստաֆոնի քաղաքի համաձուլվածքների գործարանի կոլեկտիվի հետ: Դա երկու եղբայրական ժողովուրդների դարավոր բարեկամության վառ արտահայտությունն է: Այդ բարեկամությունն օգնում է լուծելու երկու ձեռնարկությունների առջև ծառացած տնտեսական ու կուլտուրական շինարարության շատ հարցեր:

1980 թվականը կոմբինատի կոլեկտիվի համար յուրատիպ հոբելյան է: Լրանում է ձեռնարկության ստեղծման 210 տարին: Ձուլողները, քիմիագործները, լեռնագործներն ու ֆլոտատորները մրցություն են ծավալել Վ. Ի. Լենինի ծննդյան 110-ամյակը և Հայաստանում սովետական կարգերի հաստատման 60-ամյա հոբելյանը արժանավայել գործերով նշանավորելու, արտադրության արդյունավետությունն ու աշխատանքի որակը բարձրացնելու համար: Հնգամյակի ավարտական տարում կոմբինատի ընդհանուր արտադրանքի ծավալի



37,5 տոկոսը կթողարկվի պետական որականիշով: Պղնձագործները ձգտում են տասներորդ հնգամյակի պլանը կատարել նոյեմբերի 20-ին և երկրին տալ մի քանի միլիոն ռուբլու լրացուցիչ արտադրանք: Կասկած չկա, որ նրանք պատվով կկատարեն իրենց խոստումը:

Գրավիչ է տեսարանը, երբ պղնձագործ մարդիկ թողարկում են հերթական ձուլվածքը: Հսկայական ձուլող վառարանի հրանցքից անվերջ հոսում է շիկացած պղինձը: Թռչում են մետաղի ծորացող շիթերը, առաջացնելով ինքնատիպ մի հրավառություն: Ձուլող մարդիկ մետալուրգի հագուստով նման են հեքիաթային դյուցազունների, որոնք, ասես, խաղում են կրակի հետ: Նրանք պղինձ են արարում...

**Ա. Խ. ԴԱՎՈՅԱՆ**
ՀԿԿ Թումանյանի շրջկոմի արդյունաբերության և տրանսպորտի բաժնի վարիչ

# ՎԵՐԱԾՆՈՒՆԴ

ՈՂՋԻ ԵՎ ՎԱՋԱԳԱՆ ԳԵՏԵՐԻ ափամերձ լեռնալանջերին, Խուստուփի դեմ-դիմաց, ծնունդ է առել բացառապես մի նոր քաղաք: Ղափանում հինը տեղի է տվել, նորը՝ ծավալվել, աջ ու ձախ փռել թևերը: Այնքան էլ երկար ժամանակ չի անցել, երբ քաղաքի կենտրոնում քանդվեցին վերջին երկու հին շենքերը: Նրանց տեղում հիմա մանկական զբոսայգին է, որի զարդը անմահ Լենինի, հեղափոխության մարտիկ Բագրատ Հարությունյանի և Մեծ հայրենականի լեգենդար հերոս Հունան Ավետիսյանի հուշարձաններն են: Այստեղ են տեղի ունենում լեռնագործների քաղաքի աշխատավորության տոնական հավաքները... Զբոսայգին գոտևորում են երաժշտական ուսումնարանի և լեռնագործների կուլտուրայի ու տեխնիկայի պալատի մոնումենտալ շենքերը:

Ղափանից մի քանի կիլոմետր անդին, Ողջի գետի վերին հովտում, հառնել է մի ուրիշ գողտրիկ բնակավայր: Հանքագործների Քաջարան անունով քաղաքն է այն:

Ղափանն ու Քաջարանը չես շփոթի որևէ այլ քաղաքի հետ: Համարձակ նախագծով ծնված, փոփոխական հարկերով բնակելիներն ավելի են խտացրել նրանց ինքնատիպության երանգները:

— Ո՞վ է վերակառուցում Ղափանը, ո՞վ է կատարելագործում Քաջարանը, վեր բարձրացնում հսկա կոմբինատի ու արդիական գործարանների, դպրոցների ու մանկապարտեզների, կուլտուրայի օջախների և բազում այլ շենքեր:

— «Քաջարանշին» տրեստի կոլեկտիվը,— կպատասխանի ամեն մի ղափանցի ու քաջարանցի:

Դա մի կոլեկտիվ է, որը աշխատանքային լավ ավանդույթներ ունի և բազմիցս արժանացել է հանրապետական ու համամիութենական պարգևների:

Տասներորդ հնգամյակի չորրորդ տարին արգասավոր էր տրեստի մարդկանց համար: Նրանք տեխնիկատնտեսական բոլոր ցուցանիշներով կատարեցին ու գերակատարեցին ո՛չ միայն պետական պլանները, այլև սոցիալիստական պարտավորությունները, տարին փակեցին օգուտով, ապահովեցին աշխատանքի արտադրողականության զգալի աճ, կառույցները շահագործման հանձնեցին բարձր գնահատականներով: Եվ շինարարների հերոսական աշխատանքն արժեքավորվեց ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշով: Իսկ դա վերջին տարիների միակ պարգևը չէ:

Կոլեկտիվի հաղթական քայլքն ունի տարիների պատմություն, որն անխզելի է Ղափանի ու Քաջարանի վերածնության պատմությունից:

...Տրեստի «տարեգիր» Գրիշա Մարտիրոսյանի մոտ կան զարմանք շարժող թվեր, ճանաչում գտած անուններ, հուշերի պատառիկներ. ծննդյան թիվը 1948-ն է: Այդ տարվա հոկտեմբերի 1-ին ձևավորվեց շինմոնտաժային վար-

նությունը, որն ուներ ընդամենը 106 աշխատող, 42 ձի, 23 ավտոմեքենա, մեկական սղոց, վիբրատոր, պարկետ մաքրող մեքենա։ Առաջին տարում շինմոնտաժային աշխատանքի ծավալը կազմեց ընդամենը 274 հազար ռուբլի։ Առաջին քարը դրեց հայտնի որմնադիր Կարապետ Հարությունյանը, առաջին տուֆը տաշեց Սեդրակ Հայրապետյանը։

Մեկ տասնամյակ անց՝ 1958-ին, շինվարչությունը վերափոխվեց տրեստի՝ «Քաջարանշին» անունով։ Ու նրա կոլեկտիվի անելիքն առավել բարդ ու պատասխանատու դարձավ՝ վերակառուցել Ղափանը և կառուցել Քաջարան քաղաքը։ Եվ կոլեկտիվը պատվով կատարեց իր պլանը։ Անցան տարիները, և մեկ հաջողությանը հաջորդեց մյուսը։ Ու ամեն մի տարվա գործադրած ջանքերը չափվում էին ոչ թե հազարներով, այլ միլիոններով։ Իսկ միլիոնների ետևում բնակելի տներ էին, կրթության, կուլտուրայի ու առողջապահության օջախներ, առևտրի ու կենցաղային սպասարկման օբյեկտներ։ Հայրենանվեր գործերի համար 1970-ին Լենինի շքանշանով պարգևատրվեցին տրեստի անվանի շինարարներ Դառնիկ Մանասյանը, Սեդրակ Հայրապետյանը, Արսեն Պետրոսյանն ու Խոսրով Փիրիջանյանը։

1968 թ. ծանր աղետը (երկրաշարժը) փորձություն էր ոչ միայն Քաջարանի, այլև շինարարների մեծ ընտանիքի համար։ Սակայն մարդկանց կամքն ավելի ուժեղ էր. Քաջարանը վերածնվեց։ Զանցած երկու տարի, քաղաքային սովետի գործկոմի օրակարգից հանվեց... բնակարանի պրոբլեմը։

Տասներորդ հնգամյակը շինտրեստի կոլեկտիվի պատմության մեջ կմտնի որպես աշխատանքային նոր խիզախումների ժամանակաշրջան։ Միայն վերջին չորս տարում նա կառուցել ու շահագործման է հանձնել 50 կարևոր օբյեկտ, այդ թվում՝ 9 դպրոց, 26 բնակելի տուն, տեխնիկումի համալիր, չորս մանկապարտեզ, վեց կուլտուրայի պալատ և այլն։ Եվ բոլորը՝ «լավ» ու «գերազանց» գնահատականներով։ Միայն օգուտների հաշվին կառուցվել են տրեստի բանվործառայողների բնակելի տունը, շինարարների կուլտուրայի պալատը, պիոներական ճամբարը, մանկապարտեզը։

Ահա վերընթացի պերճախոս մի վկայություն. եթե իններորդ հնգամյակի առաջին չորս տարում շինարարները հանձնել են 86.700 քմ բնակելի մակերես, ապա տասներորդ հնգամյակի նույն ժամանակամիջոցում՝ 99.303 քմ։ Հիմա շինտրեստը խոշոր մի ձեռնարկություն է՝ հարյուրավոր բանվորներով, բարձրագույն կրթությամբ մասնագետներով, ժամանակակից բազմազան, բարձր արտադրողական շինարարական տեխնիկայով, լավ հագեցած ավտոտրանսպորտային հավաքակայանով։ Եվ որպես այդ ամենի տրամաբանական արդյունք. շինարարական աշխատանքի մեքենայացման բարձր մակարդակ։ Հողային աշխատանքների 96,7, բետոնաթափման ու բետոնաբարձման՝ 98,8 տոկոսը, բետոնային աշխատանքները լրիվին վստահված են մեքենաներին։

«Նորարարների ռեկորդային ցուցանիշները,— նշված է «Գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի հետագա բարելավման մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ,— ոչ թե ինքնանպատակ բան են, այլ աշխատանքի արտադրողականության բարձրացման համար մասսաների աշխատանքային եռանդը մոբիլիզացնելու կարևորագույն միջոց, արտադրության արդյունավետության և աշխատանքի որակի բարձրացման էական ռեզերվ»։ Երբ կոլեկտիվի գործունեությունը գնահատում ենք այս չափանիշով, ապա գլխավոր հասումը պիտի համարել նրա անդամների ակտիվության աճը, լենինաբար ապրելու, աշխատելու և պայքարելու նրա անկոտրում ձգտումը։ Մեկը՝ բոլորի, բոլորը մեկի համար նշանաբանը դարձել է նրանց նպատակը, հաջողությունների երաշխիքը։ Դրական այդ տեղաշարժերի վկայությունը նաև աշխատանքի կազմակերպման առաջավոր եղանակների արմատավորումն է, սոցիալիստական մրցության մեծ թափը, մարդկանց բարձր խանդավառությունը։

Տրեստում լենինաբար աշխատելու ու պայքարելու լավ օրինակ են տալիս տնտհաշվարկային եղանակով գործող բրիգադները։ Զլոբինյան այդ եղանակը կիրառվել սկսվել է 1972-ից։ Այն զգալիորեն նպաստեց աշխատանքի արտադրողականության աճին (15 տոկոսով), օբյեկտների շահագործման ժամկետների կրճատմանը, շինարարության որակի բարելավմանը, ինքնարժեքի իջեցմանը։ Տրեստի կուսկոմիտեն (քարտուղար՝ Ռ. Ստեփանյան) և ադմինիստրացիան (կառավարիչ՝ Ս. Վարդանյան) վերլուծել են տնտհաշվարկային բրիգադների (դրանց թիվը 27 է) գործունեությունը և կազմակերպչական, քաղաքական, գաղափարական աշխատանքի հիմքում դրել նրանց առաջավոր փորձի լայն տարածումն ու արմատավորումը։



Ահա Գառնիկ Գևորգյանի ղեկավարած տնտհաշվարկային բրիգադում եմ՝ 1.176 տեղանոց դպրոցի շինարարությունում։ Ցուրտ էր, անընդհատ տեղացող ձյունը, սաես, փորձում էր սառեցնել շինարարների դիմացկունությունն ու համբերությունը։ Փայտյա տնակում, ինքնաշեն սեղանին հակված բրիգադավարը «տնտղում էր» աշխատանքային գծագրերը, ճշտում բոլոր մանրամասները։ Քիչ անց հավաքվում են տղաները և սկսվում է բրիգադի հարցազննումը։ Նրանք ծանրութեթև են անում անելիքները, և բրիգադավարն անում է իր եզրակացությունը՝ միայն «գերազանց» գնահատակով, անպայման՝ սեպտեմբերին։ Ընկերոջ ասածը օրենք է, կատարելը՝ պարտադիր։ Որոշվում է յուրաքանչյուրի անելիքը, մշակվում աշխատանքի հստակ ժամկետացանկ։

Բրիգադավար Գառնիկ Գևորգյանը հեղինակություն է վայելում իր ընկերների շրջանում։ Նա այն շահել է անբասիր, նվիրված աշխատանքով, ընկերների նկատմամբ տածած խորին հարգանքով։ Պրոֆտեխուսումնարանի շրջանավարտ ու հանքի բանվոր էր, երբ սկսվեց կառուցվել Քաջարանը, պղնձամոլիբդենային կոմբինատը։ Ու նա հայտնվեց շինհրապարակում, դարձավ հայրենանվեր մեծ գործերի ակտիվ մասնակիցը. շարքային բանվոր էր՝ ծեփագործ, ներկարար, որմնադիր, բետոնագործ, հյուսն ու ամրանագործ։ «Այսօրվա բանվորը պետք է կարողանա կարդալ նախագիծը»— կենսական այս պահանջը նրան շինարարական տեխնիկում տարավ։ Ավարտեց ու նորից այցի գնաց իր կոլեկտիվին, վերստին անցավ իր սիրած գործին։ Ու մի օր էլ կարգեցին բրիգադավար, երբ կուսակցության անդամի տոմսը ղրեց գրպանը, իրեն ավելի պատասխանատու զգաց կոլեկտիվի ու հայրենիքի առաջ, բազմապատկեց եռանդն ու նեդրումը։

Մարդու գնահատման ճիշտ չափանիշը կոնկրետ գործերն են, աշխատանքի վերջնարդյունքը։ Այս առումով կոմունիստ Գառնիկ Գևորգյանի տնտհաշվարկային բրիգադը արժանի է ամենայն գովասանքի։ Դեռևս 1979-ի փետրվարի 1-ին շինարարների այդ համերաշխ կոլեկտիվն ավարտեց տասներորդ հնգամյակը (նշենք, որ 1979-ի հուլիսի 1-ին էլ չորս տարվա պլան են կատարել 3 այլ տնտհաշվարկային բրիգադներ) և պարտավորվեց հնգամյակի եզրափակիչ տարում կատարել ևս մեկուկես տարվա նորմա։ Անցած չորս տարում, նախատեսված 1 միլիոն 396 հզար ռուբլու փոխարեն, բրիգադը կատարել է 1 միլիոն 956 հազար ռուբլու շինմոնտաժային աշխատանք և այժմ կառուցում է 1982-ի մայիսի հաշվին։

Գառնիկ Գևորգյանի բրիգադն այժմ ընթացիկ հնգամյակի ծնունդ նոր թաղամասի (որը դեռևս անուն չունի) համար կառուցում է դպրոցական համալիր։ Օգտվելով կարճատև դադարից՝ զրուցում եմ բրիգադի տղաների հետ։

— Ո՞րն է ձեր հաջողությունների գաղտնիքը։

— Ես բրիգադի առաջին անդամներից եմ,— ասում է Ալյոշա Գևորգյանը։— Մենք մի ընտանիք ենք՝ միշտ կայուն կազմով։ Բոլորիս համար մի չգրված օրենք կա՝ կառուցել լավ ու արագ, օգնել միմյանց ամեն ինչում։ Անդամագրվե՞լ ես կոլեկտիվին, պետք է անթերի կատարես նրա աշխատանքային, բարոյաքաղաքական կոդեքսի բոլոր կետերը։

— Մեր բրիգադավարն ուղղամիտ է, ազնիվ ու ճշտապահ,— ասում է տղաներից մեկ ուրիշը,— մենք հավատում ենք իրեն, ինքը՝ մեզ, և գործը շահում է դրանից։

— Հաջողության գաղտնիքը,— բացատրում է բրիգադավար Գ. Գևորգյանը,— բարոյաքաղաքական ու հոգեբանական բարենպաստ մթնոլորտն է, միմյանց փոխըմբռնումը, փոխադարձ վստահությունն ու պահանջկոտությունը, հոգատարությունը միմյանց նկատմամբ։ Պակաս դեր չունի նաև նյութական շահագրգռության բարձրացման գործոնը, տվյալ դեպքում դրան նպաստում է

վարձատրության ակորդային, ակորդային-պարգևային մեթոդը: Այն մեծ չափով նպաստում է կոլեկտիվիզմի, փոխադարձ օգնության և աշխատանքի արդյունքների համար պատասխանատվության արմատավորմանը:

— Իսկ մատակարարման դժվարություններ չե՞ն լինում ձեզ մոտ,— հարցնում եմ բրիգադավարին:

— Իհարկե, մենք ևս բախվում ենք այդ պրոբլեմի հետ, բայց մեզ փրկում է ամեն ինչում խնայողության խստագույն ռեժիմի կիրառումը:

Բանվորներից մեկը հարում է.

— Մեր բրիգադավարը խիստ է: Բոլոր նյութերը, տեղը տեղին, հասնում են շինարարություն:

Այո՛, ակներև է Գառնիկ Գևորգյանի ղեկավարած բրիգադի (ինչպես և մյուսների) ներդրումը տրեստի աշխատանքային հաջողություններում ու համամիութենական բարձր պարգևի նվաճման մեջ: Բրիգադավարի անձնվեր աշխատանքը ևս աննկատ չի մնացել, գնահատվել է ըստ արժանվույն. Աշխատանքային կարմիր դրոշի ու Հոկտեմբերյան հեղափոխության շքանշաններ, 1973 թվականից՝ կուսշրջկոմի բյուրոյի անդամ, Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի դեպուտատ (երկրորդ անգամ), Հայաստանի կոմկուսի XXVI համագումարի պատգամավոր: Պարգևներն ու բարձր դիրքը, օրավուր աճող հեղինակությունն ու հարգանքը, սակայն, չեն շլացնում ու գոռոզացնում, չեն խանգարում բրիգադավար Գառնիկ Գևորգյանին, որպեսզի նա առավոտ կանուխ շտապի շինհրապարակ, բարիլույս ասի գործընկերներին, պարզի բոլորի տրամադրությունը, կոշտացած ձեռքերով կպչի գործի ու հետո ասի.

— Դե՛, տղե՛րք, մի թափ վերցրեք, սեպտեմբերի 1-ը մոտենում է:

Այդպիսի նվիրվածությամբ ու ձգտումով են ամեն օր գործն սկսում «Քաջարանշին» տրեստի փառաբանված կոլեկտիվի բոլոր բրիգադները, որոնք ծնունդ են տվել Քաջարանին ու վերածնում, վերափոխում են Ղափանը: Ու վերածնունդը շարունակվում է:

**Ա. Ն. ԱԴԱՄՅԱՆ**
«Ղափան» թերթի բաժնի վարիչ

# ՀԱՋՈՂՈՒԹՅԱՆ ՎՃՌԱԿԱՆ ԳՈՐԾՈՆԸ

ԱՆԻՒ ՇՐՋԱՆԻ ՄԱՐԱԼԻԿԻ Ջերժինսկու անվան կոլտնտեսությունը վերջին տասնամյակներին լուրջ վերելք է ապրում. երկու հնգամյակ անընդմեջ (իններորդ և տասներորդ) առաջադրանքները, բոլոր ցուցանիշներով, կատարում է չորս տարում: Անցնող ամեն մի տարին նոր հաջողություն է բերում: Հասումներն առավել ցայտուն են տասներորդ հնգամյակում. արտադրության դինամիկ զարգացումը շարունակվում է, նոր ճանաչման արժանացնում տնտեսությանը և նրա մարդկանց: Հիշարժան է մարալիկցիներիս համար 1979-ի դեկտեմբերի 16-ը: Այդ օրը կոլտնտեսությունը զեկուցեց կուսակցությանն ու կառավարությանը՝ տասներորդ հնգամյակի բոլոր առաջադրանքները գերակատարելու մասին: Հնգամյա պլանով նախատեսվածից ավելի արտադրվել է 277,4 տոննա միս, 40,8 տոննա կաթ, 12 ցենտներ բուրդ, 228 հազար ձու: Հացահատիկի վաճառքի առաջադրանքը կատարվել է կրկնակի անգամ, ձվինը՝ 130 տոկոսով և այլն:

Գոհացուցիչ են բերքատվության ու մթերատվության արդյունքները, որոնք բարձր արդյունավետության չափանիշ են: 1979-ի բնակլիմայական անբարենպաստ և անջրդի պայմաններում կոլտնտեսությունն ամեն մի հեկտարից ստացավ 41,3 ցենտներ հացահատիկ: Մեկ ոչխարի բրդատվությունը կազմեց 4,2, կովերի միջին կաթնատվությունը՝ 2.982 կիլոգրամ: Կաթնապրանքային ֆերմայի բոլոր կթվորները մոտեցել են յուրաքանչյուր կովից 3.000 կիլոգրամ կաթ ստանալու բնագծին, իսկ նրանցից տասը առաջավորներ հատել են այն, դարձել կթվոր 3.000-ականների հանրապետական ակումբի անդամներ: Ինչպես մթերքների արտադրության, այնպես էլ պետությանը դրանց վաճառքի ընթա-



ցիկ հնգամյակի անցած չորս տարիների արդյունքները զգալի չափով գերազանցում են նախորդ՝ իններորդ ողջ հնգամյակի մակարդակը: Հացահատիկի արտադրության աճը, օրինակ, կազմում է 27,9 տոկոս, մսինը՝ 35,3, կաթինը՝ 40,9, բրդինը՝ 6,9 տոկոս, ավելի քան կրկնապատկվել է ձվի արտադրությունը:

Ինչպես տեսնում ենք, թվերը պերճախոս են: Դրանք արտացոլում են տնտեսության առաջընթացը, բարգավաճումը, արտադրության մարդկանց եռանդուն ջանքերը: Այդ բարձր ցուցանիշների համար էլ կոլտնտեսությունը 1979-ին հաղթող ճանաչվեց համամիութենական սոցիալիստական մրցությունում և պարգևատրվեց ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշով: Նրա անունը գրանցվեց ՍՍՀՄ ԺՏՆՑ-ի համամիութենական պատվո տախտակին:

Սակայն դա մեր տնտեսության միակ պարգևը չէ: Իններորդ հնգամյակում նա արժանացել է Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանի, երկու անգամ՝ համամիութենական փոխանցիկ կարմիր դրոշի և ՍՍՀՄ ԺՏՆՑ պատվո տախտակին գրանցվելու պատվին, բազմիցս՝ հանրապետական ու շրջանային փոխանցիկ կարմիր դրոշների: Տնտեսության նախագահ Ս. Նազարյանին շնորհվել է սոցիալիստական աշխատանքի հերոսի կոչում, զգալի թվով կոլտնտեսականներ պարգևատրվել են ՍՍՀՄ շքանշաններով ու մեդալներով:

Տնտեսության հասումները կազմակերպական, քաղաքական-դաստիարակչական միջոցառումների հետևողական իրականացման արգասիք են: Այդ գործում խոշոր դեր է խաղացել նաև սոցիալիստական մրցության ըստ ամենայնի ծավալումը: Այն մշտապես համարվել է կուսկազմակերպության և նրա բյուրոյի հոգածության առարկան: Մրցությունը կազմակերպելիս մենք ելնում ենք Վ. Ի. Լենինի առաջադրած այն կարևոր դրույթից, որ՝ «Մրցության կազմակերպումը սոցիալիստական սկզբունքներով պետք է լինի հասարակության վերակազմության առավել կարևոր և առավել շնորհակալ խնդիրներից մեկը» (Երկեր, հ. 27, էջ 243):

ՍՄԿԿ XXV համագումարը, որպես երկրի սոցիալ-տնտեսական զարգացման տասներորդ հնգամյա պլանի կատարման կարևոր գործոն, շեշտեց նաև սոցիալիստական մրցության լայն ծավալման անհրաժեշտությունը: Այն մեզ մոտ ևս աշխատավորական մասսաների դաստիարակության ու պատասխանատվության բարձրացման, նրանց մոբիլիզացման, պլանային առաջադրանքների կատարման վճռական միջոց է: Մենք ամեն կերպ ձգտում ենք ապահովել մրցության գործարարությունն ու արդյունավետությունը, կիրառել նրա կազմակերպման լենինյան սկզբունքները: Երկրորդ հնգամյակն է, որ տնտեսության մարդիկ աշխատում են «Հնգամյակը՝ չորս տարում» նշանաբանով: Լայն արձագանք է գտել «Ոչ մի ետ մնացող քո կողքին» կոչը:

Մրցության գործարարության ու արդյունավետության բարձրացման նպատակով ստեղծել ենք սոցմրցության շտաբ, որը գլխավորում է մրցությունը:

Արդյունքների ամփոփումը մրցության եզրափակիչ փուլն է, բայց սպասել մինչև ամփոփումը և նոր միայն պարզել, թե ով ինչպես է աշխատել, գործին օգնել չի կարող: Ուստի, ընթացքում մենք հետևում ենք գործերի վիճակին, վերացնում արգելակող խոչընդոտները:

Կուսբյուրոն հոգ է տանում, որպեսզի ճիշտ զուգակցվեն մրցության նյութական և բարոյական խրախուսման միջոցները: Այդ նպատակով կոլտնտեսության վարչության հետ միասին կիրառում ենք զանազան ձևեր: Մշտապես գործում են «Պատվո տախտակը» և «Պատվո գիրքը», խրախուսական նյութեր են հրապարակվում «Վերելք» պատի թերթում: Մրցության առաջավորները ներկայացվում են նաև կառավարական պարգևների, ԺՏՆՑ-ի մեդալների, շրջանային, գերատեսչական և հանրապետական պատվոգրերի: Դրամական պարգևներից բացի, մրցության հաղթողներին տրվում են արժեքավոր հուշանվերներ, անվճար ուղեգրեր և այլն:

Բացի մշտականից, խրախուսման ձևեր ենք կիրառում նաև սեզոնային աշխատանքների ժամանակ: Օրինակ, 1979-ի բերքահավաքը արագ և անկորուստ ավարտելու համար սահմանել էինք դրամական մրցանակ և փոխանցիկ հուշադրոշ: Կոմբայնավարներից նա (իսկ դաշտում աշխատում էր «Նիվա» մակնիշի

հատականը ամենից առաջ այդ որոշման կենսագործման արդյունքն է։

Կցանկանայի նշել ՀԿԿ XXVI համագումարի որոշումների նշանակությունը հատկապես այգեգործության բնագավառում։ ՀԿԿ Կենտկոմի ապրիլյան (1977 թ.) պլենումը ավելի հանգամանորեն քննարկեց այդ ճյուղի հետագա զարգացման հարցը։ Մենք՝ արարատյան դաշտի հողագործներս, իրավունք չունենք լինել միջակների շարքում, երբ վերոհիշյալ որոշումների կենսագործման շնորհիվ դարավանդների միջոցով այգեստանների են վերածվում թեք ժայռալանջերը, անջրդի ու դարերով խոպան տարածությունները։ Եթե կիրառենք այդ վայրերում տարվող աշխատանքների թեկուզ և մեկ քառորդը մեր հարթ ու բերրի հողերում, բարիքների ծով կստեղծենք։ Մեր տնտեսության արդյունքները, ինչպես տեսաք, գոհացուցիչ են։ Բայց մենք շատ մտահղացումներ ու կիսատ մնացած նախաձեռնություններ ունենք, որոնց իրականացման դեպքում վերելքը կլինի ավելի կայուն ու տևական։

Սարիբեկ Վարդանյանը սիրում է ապրիլը։ Վաղորդյան լռության մեջ միայնակ շրջում է այգիներում, և աչքի առջև զեփյուռի լուռ շրշյունով պայթում են բողբոջները, բացվում կոկոնները, ժպտում լուսաբացի առաջին շողերին։ Երակներում զգում է իր ղեկավարությամբ հիմնած այգու ամեն մի ծառի, վազի ավշի բուրմունքը, որ այնպես համակել է իրեն, վազերին, հողը...

Ե՞րբ է ապրիլը եղել կենսավիշով այսքան հարուստ ու զուլալ։

Սահմանագիծ է ինքը՝ Սարիբեկ Վարդանյանը, այն ապրիլով սպառված սերնդի փրկված բեկոր, շյուղարձակող մի ուրիշ սերնդի կենսատու արմատ։ Կյանք է ժառանգել այն սերնդից, հանձնել նորերին, ու կյանքի հետ՝ օջախ ու հայրենիք ունենալու երազանք, կառուցելու, շենացնելու անհագ ձգտում, մարդկանց հանդեպ՝ սեր ու կարոտ։ Եվ այդ ամենի համար պարտական է մեծ Լենինին, որի ծննդյան 110-ամյակը կոլտնտեսությունը նշանավորում է աննախադեպ նվաճումներով, պարտական է լենինյան գաղափարներին, որ տարածվեցին նաև հեռավոր այս բնակավայրում, պարտական է և բարիքներ արարող մարդկանց, որոնք այսօր ապրում, աշխատում ու պայքարում են լենինաբար՝ հանուն այսօրվա երջանիկ կյանքի և ավելի պայծառ ապագայի։ Մարդիկ, որոնց ջանքերով նվաճվեց ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշը։

**Մ. Ս. ԴԱՆԻԵԼՅԱՆ**

## ՆՈՐԻ ՇԻԼԵՐԸ

**Զ**ԱՐԵՆՑԱՎԱՆԻ ԲԵՌՆԱՈՒՂԵՎՈՐԱՏԱՐ ավտոձեռնարկության կոլեկտիվը տասներորդ հնգամյակի չորրորդ տարում հաղթող ճանաչվեց համամիութենական սոցիալիստական մրցության մեջ և հինգերորդ անգամ անընդմեջ արժանացավ ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԿԽ-ի ու ՀամԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշին։

Հինգ տարի առաջ այդ դրոշը կոլեկտիվին հանձնելու ժամանակ ավտոտրանսպորտայինները հանդիսավոր խոստում տվեցին՝ տասներորդ հնգամյակի բոլոր տարիներին աշխատել հարվածայնորեն, բոլոր տեղամասերում ամրապնդել արտադրական ու աշխատանքային կարգապահությունը և ոչ ոքի չզիջել փոխանցիկ դրոշը։

Խոսքը գործ դարձնելու համար ձեռնարկության կուսակցական, արհմիութենական, կոմերիտական կազմակերպությունները, դիրեկցիան մշակեցին ու իրականացրին մի շարք քաղաքական-կազմակերպչական միջոցառումներ։ Առաջին հերթին ուշադրություն նվիրվեց աշխատանքային ու արտադրական կարգապահության ամրապնդմանը, ձեռնարկության ընդհանուր գործերի համար կոլեկտիվի յուրաքանչյուր աշխատողի պատասխանատվության բարձրացմանը։ Այդ նպատակով հարկ եղավ Միության առաջավոր ավտոձեռնարկությունների օրինակով անցնել աշխատանքի կազմակերպման բրիգադային եղանակին, որը շատ առավելություններ ունի։ Բրիգադավարն օգտվում է լայն իրավունքներից. ինքն է կազմակերպում բրիգադի աշխատանքը, պատասխանատվություն կրում իր ղեկավարած կոլեկտիվի յուրաքանչյուր անդամի գործունեության ու վարքագծի համար։

Աշխատանքի կազմակերպման նոր եղանակի շնորհիվ նկատելիորեն ամրապնդվեց աշխատանքային կարգապահությունը, բարձրացավ ավտոմեքենաների օգտագործման արդյունավետությունը։ Բրիգադի ներսում նկատելիորեն դրսևորվեցին կոլեկտիվիզմը, ընկերական փոխօգնությունը։ Քիչ չեն դեպքերը, երբ որևէ ավտոմեքենա փչանալու դեպքում նորոգումն ստանձնում են բրիգադի անդամները, կարգի բերում մեքենան և կանխում նորոգման պատճառով առաջացող պարապուրդը։ Ահա մեկ կոնկրետ օրինակ։

— Փչացել էր վարորդ Վարազդատ Մխիթարյանի մեքենայի շարժիչի գլանի գլխիկը,— պատմում է դիզելային շարժիչներով ավտոմեքենաների վարորդների բրիգադավար Ն. Լալազարյանը,— ընկերները թույլ չտվեցին վարորդին՝ մեքենան նորոգելու հայտ ներկայացնել արհեստանոցին։ Իրենք, բրիգադով փոխեցին փչացած մասը և հաջորդ օրը մեքենան սարքին վիճակում դուրս բերվեց աշխատանքի։

Այդպիսի դեպքերը եզակի չեն։

Կուսբյուրոն, դիրեկցիան խրախուսում ու պաշտպանում են կոլեկտիվում ծնվող ամեն մի լավ նախաձեռնություն։ Ահա բնորոշ մի օրինակ։ Անցյալ տարվա սկզբին Ռուբեն Խաչատրյանի ղեկավարած բրիգադը որոշեց աշխատել տնտհաշվարկով։ Նախաձեռնությունն արժանացավ դիրեկցիայի, կուսբյուրոյի ու արհմիության տեղկոմի հավանությանը։ Բրիգադն սպասարկում է «Բջնի» հանքային ջրի գործարանին, իրականացնում նրա տրանսպորտային բոլոր տեսակի աշխատանքները։ Նա գործարանի ու ավտոձեռնարկության հետ կնքել է եռակողմ պայմանագիր։

Ի՞նչ է տվել տնտհաշվարկային աշխատաեղանակը։

Անցյալ տարվա պլանով բրիգադը պետք է աշխատեր 3.600 ռուբլի վնասով։ Բայց մեքենաները արդյունավետ օգտագործելու, դատարկ վազքերը նվազագույնի հասցնելու շնորհիվ բրիգադը բեռնաշրջանառության տարեկան առաջադրանքը կատարեց 119, մեկ աշխատողի արտադրողականությունը բարձրացրեց 10,5 տոկոսով, վազքի օգտագործման գործակիցը, նախատեսված 0,8-ի փոխարեն, հասցրեց 0,88-ի։ Բարելավվեց կազմակերպչական աշխատանքը, ամրապնդվեց կարգապահությունը, բարձրացան վարորդների շահագրգռությունն ու պատասխանատվությունը։ Եվ ահա բրիգադը տարվա վերջում իր հաշվեկշռում ունեցավ 13,5 հազար ռուբլու օգուտ։ Դրա շնորհիվ գոյացավ 9.200 ռուբլու խրախուսման ֆոնդ, որից 4.350 ռուբլին հատկացվեց տարվա արդյունքներով բրիգադի անդամներին խրախուսելու նպատակին։

Բրիգադն ունի իր խորհուրդը, արհմիության տեղկոմը, որոնք տնօրինում են նրա ֆոնդերը, լուծում արտադրական ու կազմակերպական բնույթի տարբեր հարցեր։

Անցյալ տարի ավտոձեռնարկությունում ստեղծվել է բրիգադավարների խորհուրդ, որը քննարկում է արտադրության կազմակերպման, կարգապահության ամրապնդման և այլ հարցեր։ Առանձին վարորդների մոտ նկատվեցին վազքաչափերի աշխատանքի խախտման դեպքեր, որի հետևանքով կատարվում էին հավելագրումներ։ Խորհուրդը քննարկման առարկա դարձրեց այդ հարցը, պահանջեց բրիգադավարներից անձամբ հսկել վազքաչափերի աշխատանքը, կանխել խախտումները։ Եվ վերացավ կոլեկտիվին պատիվ չբերող այդ երևույթը։

Մի ուրիշ անգամ խորհուրդը քննարկեց աշխատանքային կարգապահության ամրապնդման հարցը։ Բանն այն էր, որ նկատվել էին աշխատանքի ուշ գալու, պատվիրատուների մոտ ոչ բարեխղճորեն աշխատելու, ուշացումով հավարակայան վերադառնալու առանձին փաստեր։ Քննարկումից հետո բրիգադավարներն են պատասխանատու կարգապահության խախտող վարորդի համար։ Բնականաբար ուժեղացավ հսկողությունը վարորդների նկատմամբ, վերացան կարգապահության խախտման դեպքերը։

գործությունները և արժանին են մատուցել դրանց լուսաբանման և պրոպագանդման գործին:

Առանձին երկերի տարեդարձների առնչությամբ հրատարակվել են 6—7 հոդված, որոնցում լուսաբանված են ստեղծագործությունների գաղափարական և գիտական արժանիքները, դրանց դերը հասարակության կոմունիստական դաստիարակության ասպարեզում:

Ավանդույթ է դարձել ամեն տարի նշել Վ. Ի. Լենինի ծննդյան տարեդարձները, որոնց ակտիվ մասնակցում են մեր հանրապետության մամուլը, հասարակական կազմակերպությունները և մասսայական ինֆորմացիայի մյուս միջոցները: Միայն հանրապետական լրագրերում ու ամսագրերում հրապարակվել է ավելի քան 200 հոդված, որոնք լուսաբանում են Լենինի կյանքն ու գործունեությունն ամենատարբեր տեսանկյուններով: Այստեղ և՛ հուշեր են Լենինի մասին, և՛ կյանքի առանձին դրվագներին նվիրված նյութեր, և՛ աշխատավորության նրկատմամբ լենինյան հոգատարությունը բնորոշող, և՛ նրա հարուստ ու բազմաբովանդակ ստեղծագործությունը լուսաբանող հոդվածներ:

1974 թվականին ամենուրեք նշվեց Վ. Ի. Լենինի մահվան 50-ամյա տարելիցը. այդ առիթով, ինչպես մեր հայրենիքի մայրաքաղաք Մոսկվայում, միութենական հանրապետություններում ևս անցկացվեցին գիտագործնական կոնֆերանսներ, գիտական նստաշրջաններ: Այդ առթիվ հանրապետական մամուլը զետեղեց մոտ 50 ընդարձակ հոդված, ելույթներ, ինֆորմացիաներ:

Մեր մամուլում, ՍՍՀՄ կազմավորման 50-ամյակի առնչությամբ տպագրված բազմաթիվ հոդվածներում ու գրքերում արտացոլված է Վ. Ի. Լենինի գործունեությունը, նրա դերը որպես ՍՍՀՄ կազմակերպիչ ու հիմնադիր:

Բացի հոբելյանական տարեթվերի առնչությամբ գրված հոդվածներից մեր մամուլը բազում առիթներով անդրադարձել է լենինյան այս կամ այն դրույթին, Լենինի բազմակողմանի գործունեությանը, ընթերցող հասարակությանն ավելի մոտիկից ծանոթացրել այն բոլոր հարցերին, որոնք ժամանակին արծարծել է նա: Չէ՛ որ մեծ առաջնորդի ուշադրությունից չի վրիպել կյանքի ոչ մի բնագավառ— լինի այն մամուլ, թե այս կամ այն հարցի փիլիսոփայական կամ իրավական արծարծում, ընտանիքի ու սիրո, երեխաների ու երիտասարդության դաստիարակության հետ կապված, միջազգային կամ տնտեսական ոլորտի խնդիրների լենինյան մեկնաբանում: Ավելի քան 100 հոդվածներ են նվիրվել այս հարցերին: Առանձնակի ուշադրություն է դարձրել մեր մամուլը նաև Լենինին նվիրված ստեղծագործությունների լուսաբանմանը:

Վ. Ի. Լենինի կերպարն իր ուրույն տեղն ունի մեր գրողների, բանաստեղծների, նկարիչների, կոմպոզիտորների ստեղծագործություններում, նրանք սիրով ու ջերմությամբ են պատկերում մեծ առաջնորդի կերպարը:

Լենինին նվիրված մշտական ցուցահանդեսներ են գործում հանրապետության բոլոր գրադարաններում, որոնք օրավուր լրացվում են առաջնորդին նվիրված նորանոր հրատարակություններով ու ցուցանմուշներով: Գրադարանային գործի նկատմամբ ցուցաբերած ջերմ հոգատարությունն ու ուշադրությունը դրսևորված են Լենինի ստեղծագործություններում, նրա ընտրագրած դեկրետներում և առանձին ճառերում:

Հայ գրադարանավարներն ու մատենագետները տարբեր միջոցառումների կազմակերպմամբ լայնորեն պրոպագանդում են լենինյան գաղափարները: Լենինի 110-ամյա հոբելյանի առթիվ Ալ. Մյասնիկյանի անվան հանրապետական գրադարանը հրատարակել է Վ. Ի. Լենին—110 մեթոդական ձեռնարկը, որը նախատեսված է ամենատարբեր տիպի գրադարաններում լենինյան հոբելյանին նվիրված մասսայական միջոցառումների կազմակերպման և անցկացման համար:

Լենինի աշխատությունների հայերեն հրատարակությունների մատենագրության հիմքը դրվել է դեռևս 1930 թվականին, երբ փորձ արվեց ի մի ժողովել Վ. Ի. Լենինի՝ հայերեն առանձին գրքերով հրատարակված աշխատությունների ցանկը: Այն զետեղվել է Լենինի Երկերի երկրորդ հրատարակության առաջին հատորում: Սա զուտ տեղեկատու նպատակով կազմված ցուցակ է, ուր փորձ է արված ներկայացնել Լենինի աշխատությունների հայերեն հրատարակությունները՝ մինչև 1930 թվականը. այն, սակայն, զերծ չէ վրիպումներից:

1934 թվականին Լենինի մահվան 10-ամյա տարելիցի կապակցությամբ մատենագիտական ավելի լուրջ փորձ արեց գրադարանագետ Ա. Բաբայանը, որի Վ. Ի. Լենինի աշխատությունների հայերեն թարգմանությունների բիբլիոգրաֆիական ցանկը հրատարակեց ՀՍԽՀ մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտը: Այն ընդգրկում էր Լենինի աշխատությունների հայերեն թարգմանությունները մինչև 1934 թվականը, ունի ժամանակագրական ցանկ: Ի դեպ, այս մատենագիտական ցանկը ՍՍՀՄ-ում միակն էր իր տեսակի մեջ՝ նախապատերազմյան շրջանում:

1950 թվականին Ալ. Մյասնիկյանի անվան հանրապետական գրադարանը հրատարակեց Լ. Մելքումյանի և Վ. Կարմենյանի կազմած մարքսիզմ-լենինիզմի դասականների հայերեն հրատարակությունների բիբլիոգրաֆիան, որը պարունակում է 1920—1950 թթ. Հայաստանում հրատարակված աշխատությունները: Այն չէր ընդգրկում Լենինի աշխատությունների ոչ նախասովետական շրջանի հրատարակությունները և ոչ ՍՍՀՄ մյուս քաղաքներում հրատարակված աշխատությունները:

Նախասովետական շրջանի հրատարակությունների մատենագրության բացը լրացնում է Վ. Ի. Լենինի աշխատությունների նախասովետական շրջանի հրատարակությունների բիբլիոգրաֆիական ցանկը (1903—1920 թթ.), որը զետեղված է Խ. Բարսեղյանի Բոլշևիկյան հայ պարբերական մամուլի բիբլիոգրաֆիա գրքում: Լենինի Երկերի չորրորդ հրատարակության ավարտի առնչությամբ հրատարակվեցին Այբբենական ցանկ Վ. Ի. Լենինի Երկերի 4-րդ հրատարակության մեջ մտած աշխատությունների և Տեղեկատու հատորի 2-րդ մասը:

Լենինի ծննդյան 100-ամյակի կապակցությամբ ՀԿԿ Կենտկոմի կուսակցության պատմության ինստիտուտը և Հայաստանի պետական գրապալատը պատրաստեցին և 1971 թ. հրատարակեցին Վ. Ի. Լենինի աշխատությունների հայերեն հրատարակությունների մատենագիտությունը 1904—1970 թթ. ձեռնարկը: Այն ընդգրկում է 1904—1970 թթ. ընթացքում հայերեն հրատարակված Լենինի աշխատությունները, անկախ հրատարակության տեղից: Առաջին մասում ընդգրկված են Երկերը, Ընտիր երկերը, առանձին աշխատություններն ու թեմատիկ ժողովածուները: Վերջիններս դասավորված են ժամանակագրական կարգով: Մատենագիտությունն ունի մի շարք օժանդակ ցանկեր— Աշխատությունների այբբենական ցանկ, Թեմատիկ ժողովածուների այբբենական ցանկ, ինչպես և փորձ է արված տալ վիճակագրական տեղեկություններ Լենինի աշխատությունների հայերեն հրատարակությունների վերաբերյալ:

Վ. Ի. Լենինի աշխատությունները հայերեն մատենագիտական ինֆորմացիոն ցանկ է հրատարակել նաև ՀՍՍՀ ԳԱ հասարակական գիտությունների գիտական ինֆորմացիայի սեկտորը: Այն ընդգրկում է 1904—1970 թթ. հրատարակված Լենինի աշխատությունները՝ ժամանակագրական կարգով:

Այս օրերին, երբ մեր երկիրը նշում է Վ. Ի. Լենինի ծննդյան 110-րդ տարեդարձը, մեր հրատարակչություններն ու պարբերական մամուլը ևս իրենց լուման են ներդնում պանծալի հոբելյանն արժանավայել նշելու գործում:

ԵԼԵՆԱ ԲԱՂԴԱՍԱՐՅԱՆ

հեղափոխության մասին» գիրքը).

1965 Առաջնորդող— Ռևոլյուցիայի մտքի ու գործի տիտանը
Վ. Ա. Կարպինսկի— Լենինի նամակը
Շ. Ն. Մանուչարյանց— Իլյիչը գիրքը ձեռքին

1966 Հր. Դարբինյան— Լենինը և ՌՍԴԲԿ(բ) Կենտկոմի արտասահմանյան բյուրոյի գործունեությունը
Գ. Մխիթարյան— Առաջին սովետները Լենինի գնահատմամբ
Լ. Կարապետյան— Լենինը սոցիալիստական հասարակարգի գիտական ղեկավարման մասին
Ջ. Բաշինջաղյան— Հանճարեղ մտածողի դարակազմիկ երկը («Իմպերիալիզմը որպես կապիտալիզմի բարձրագույն ստադիա» գրքի ստեղծման 50-ամյակի առթիվ)
Գ. Հովսեփյան— Լենինի կերպարը Զարենցի ստեղծագործություններում

1967 Արշ. Թովմասյան— Լենինը և սովետական օրենսդրության ստեղծումը
Հ. Կարապետյան— Կասպարովը Լենինի հանձնակատար
Մ. Անտոնյան— Վ. Ի. Լենինը և պատմության դիալեկտիկան
Խ. Բարսեղյան— Լենինյան գրական ժառանգությունը հայերեն
Էմմա Սարոյան— Ամենուր Լենինը մեզ հետ է
Լ. Կարապետյան— Լենինը և բյուրոկրատիզմի դեմ տարվող պայքարը
Հ. Հակոբյան— Սովետական պետության հանճարեղ հիմնադիրը
Ա. Գ. Ագոյան— Ազգային հարցի լենինյան լուծումը

1968 Հ. Ռ. Սուքիասյան— Դեմոկրատական ցենտրալիզմի լենինյան սկզբունքը
Մ. Ա. Պանկո— Լենինյան գաղափարների թափանցումը ֆրանսիական գրականության մեջ
Կ. Ա. Մամիկոնյան— Գիրք՝ գրված պայքարի բովում («Պետություն և հեղափոխություն» աշխատության մասին)
Վ. Ա. Պետրոսյան— Լենինը պրոլետարական ինտերնացիոնալիզմի մասին
Հ. Հ. Բարայան— Վ. Ի. Լենինը և գիտությունների մաթեմատիզացիան

1969 Մ. Խ. Իգիթխանյան— Վ. Ի. Լենինը աշխատավորների մասսայական փորձի մասին
Խ. Հ. Դանիելյան— Վ. Ի. Լենինի պետական գործունեության ոճը
Հ. Խ. Դարբինյան— Վ. Ի. Լենինը կոմունիստական ինտերնացիոնալի հիմնադիր
Մ. Վ. Արզումանյան— Վ. Ի. Լենինը և Հայկոմկուսի կազմավորումը
Ժ. Ս. Էլոյան— Ի խորոց սրտի
Մ. Հ. Առաքելյան— Վ. Ի. Լենինը և սոցիալիստական հայրենիքի պաշտպանությունը
Լ. Հ. Բարայան— Պատմագիտության ռահվիրան
Հ. Հ. Մովսիսյան— Լենինը պարսկական պոեզիայում
Լենինյան նոբելյանական հրատարակությունները
Ռ. Ա. Աբրահամյան— Երախտագիտության խոսք Գանգեսի ափերից
Ա. Ե. Եղիազարյան— Լենինյան ժողովածու կուսակցության կանոնադրության մասին
Ա. Թ. Թովմասյան— Վ. Ի. Լենինը սովետական պետության տեսաբան և հիմնադիր
Գ. Մ. Սարյան— Լենինյան գվարդիայի առաջամարտիկները
Հ. Ց. Լիլոյան— Լենինը սովետական դիվանագիտության հիմնադիր
Խ. Հ. Բարսեղյան— Լենինը հայերեն
Ռ. Լ. Մովսիսյան— Ղեկավարման լենինյան արվեստը
Փ. Ի. Ենգոյան— ՍՄԿԿ պատմության պարբերացումը Վ. Ի. Լենինի երկերում
Գ. Բ. Ղարիբջանյան— Վ. Ի. Լենինի նախաձեռնությամբ (Հայերեն և վրացերեն լեզուներով մարքսիստական գրականության հրատարակության կազմակերպումը արտասահմանում, 1904 թ..)
Ժենյա Գասպարյան— Քաղաքացիական կռիվներում տարած հաղթանակների կազմակերպիչն ու ղեկավարը

1970 ՍՄԿԿ Կենտկոմի թեզիսները Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակի առթիվ
Լ. Մ. Կարապետյան— Դեմոկրատիայի լենինյան հասկացությունը
Ա. Ս. Սիմոնյան— Լենինի գեղագիտական հայացքների առթիվ
Ռ. Մ. Սամսոնով— Համոզման լենինյան ըմբռնումը
Ա. Ց. Սիմոնյան— Ճշմարտության պես պարզ
Բ. Հ. Վերդյան— Հանդիպումներ առաջնորդի ծննդավայրում
Բ. Ս. Սեյրանյան— Լենինի պայքարը պրոլետարիատի բուրժուական այլասերման դեմ (1914 թ. հուլիս—1917 թ. փետրվար)
Գ. Ա. Գալոյան— Լենինը և հայ ժողովրդի վերածնունդը



Վ. Հ. Գևորգյան— Մեծ առաջնորդի ուղիով
Ս. Տ. Ալիխանյան— Լենինը կադրերի մասին
Ն. Մ. Թորոմանյան— Սովետական դատախազության կազմակերպման լենինյան սկզբունքները
Ա. Մ. Նազինյան— Լենինի կերպարը սովետահայ բանահյուսության մեջ
Առաջնորդող— Հեղափոխական մտքի ու գործի ռահվիրան
ՍՄԿԿ հիմնադիրն ու մեծ առաջնորդը
Հ. Ասլանյան— Լենինյան գաղափարների վեհությունը
Հ. Աղաջանյան— Մեր դարի մեծագույն մտածողը
Ջ. Բաշինջաղյան— Անմահ ղեկավարի մշակած պլանով
Մ. Մելիքյան— Ազգերի դաշնադրության լենինյան ուսմունքը
Վ. Ավետիսյան— Վ. Ի. Լենինի գրական հարուստ ժառանգությունը
Հ. Գ. Ղազարյան— Գրականության հասարակական դերի լենինյան ըմբռնումը
Հ. Ջ. Այրեսյան— Սոցիալիստական ստեղծագործության գեղագիտության լենինյան գաղափարները
Գուստավ Հուսակ— Լենինիզմը և կոմունիստական շարժումը Չեխոսլովակիայում
Զեփյուռ Ասատրյան— Լենինի հետ («Վավերագրեր և հուշեր», «Հայաստան» հրատ., 1969)
Մ. Ա. Պանկո— Լենինը կոմունարների հայրենիքում (Ժան Ֆրեվիլի «Լենինը Փարիզում» գրքի մասին)
Ա. Ա. Մեհրաբյան— Արտացոլման լենինյան տեսությունը հոգեբանության առումով

1971 Է. Ս. Մարգարյան— Սոցիոլոգիայի դերի լենինյան բնութագիրը
Ս. Դ. Սարգսյան— Մատերիայի անսպառելիության լենինյան գաղափարը և արդի ֆիզիկան
Հ. Գ. Գրիգորյան— Լենինը և փիլիսոփայության պատմությունը
Գ. Հ. Ղարախանյան— Վ. Ի. Լենինը իրավաբան (Թռուցիկ ակնարկ)
Վ. Ս. Աստվածատուրով— Վ. Ի. Լենինը և սոցիալիստական պետության վիճակագրությունը

1972 Գ. Բ. Ղարիբջանյան— Լենինյան համոզվածությամբ
Ա. Թելունց— Մարտնչող մատերիալիզմի ծրագրային փաստաթուղթը (Վ. Ի. Լենինի «Մարտնչող մատերիալիզմի նշանակության մասին» հոդվածի հրատարակման 50-ամյակի առթիվ)
Մ. Ա. Մելիքյան— Լենինյան դաշնադրության նոյակապ նվաճումները

1973 Ս. Ֆ. Օդուև— Լենինյան փիլիսոփայական ժառանգությունը և ժամանակակից ռևիզիոնիզմի քննադատությունը
Ա. Գ. Ագոյան— Ստեղծագործական կոլեկտիվի դժվարին ուղիներով

1974 Բ. Հ. Անանիկյան— ՍՄԿԿ պայքարը լենինիզմի անաղարտության համար
Մ. Ա. Մելիքյան— Վ. Ի. Լենինը և նոր մարդու բարոյական դաստիարակության պրոբլեմը
Հ. Վ. Հակոբյան— Խաղաղության լենինյան ծրագրի կենսագործումը
Գ. Բ. Ղարիբջանյան— Լենինյան գաղափարների իրականացումը Սովետական Հայաստանում
Ն. Հ. Հովհաննիսյան— Վ. Ի. Լենինը և Արևելքի ազատագրումը
Բ. Պոնոմարյով— Վ. Ի. Լենինը և միջազգային կոմունիստական շարժումը
Վ. Ի. Լենինի նոր փաստաթղթերը
Ռ. Բ. Կարապետյան— Մեծ կյանքի տարեգրությունը
Զեփյուռ Ասատրյան— Միլիոնների սրտի խոսքը («Նամակներ Վ. Ի. Լենինին արտասահմանից», «Հայաստան» հրատ., 1973):

1975 Առաջնորդող— Ապրենք և աշխատենք լենինաբար
Ա. Գ. Ագոյան— Լենինյան փրկարար դրոշով
Ա. Ս. Սիմոնյան— Առաջնորդի բոցաշունչ խոսքը
Հ. Ն. Կարապետյան— Վ. Մ. Կասպարովի նամակագրությունը Վ. Ի. Լենինի և Ն. Կ. Կրուպսկայայի հետ (1913—1914 թթ.)
Ջ. Ս. Կիրակոսյան— Վ. Ի. Լենինի հեղափոխական պայքարն ընդդեմ պատերազմի (Ցիմմերվալդի կոնֆերանսի 60-ամյակի առթիվ)

1976 Ա. Գ. Ագոյան— Ստեղծագործական մարքսիզմի հիմնարար երկը

1977 Վ. Շչերբիցկի— Կատարելապես տիրապետել աշխատանքի լենինյան ոճին
Վ. Ի. Լենինի գաղափարական ժառանգությունից. Վ. Ի. Լենինի հառը՝ նվիրված Յա. Մ. Սվերդլովի հիշատակին

1978 Վ. Մ. Մնացականյան— Լենինը և գրականության նոր ձևերի պրոբլեմը

Հ. Մ. Ոսկանյան— Աշխատանքի լենինյան ոճի արմատավորման համար

Մ. Ա. Մելիքյան— Ստեղծագործական մարքսիզմի ճանճարեղ երկը (Վ. Ի. Լենինի «Պետություն և հեղափոխություն» աշխատության հրապարակման 60-ամյակի առթիվ)

Լ. Ա. Օլեպով— Կուսակցության մասին լենինյան ուսմունքի կենսականությունը

Հ. Գ. Հովհաննիսյան— Լենինյան դեկրետը և արխիվային գործի զարգացումը Սովետական Հայաստանում

1979 Ա. Ս. Սիմոնյան— Լենինը մեր կյանքում

Վ. Մ. Հարությունյան— Լենինյան դեկրետների կենսագործման ուղիով

Վ. Հ. Սարգոյան— «Աշխատանքի լենինյան ոճը»

Լ. Հ. Աբրահամյան— Լենինյան ճանճարի վառ փայլատակումը (Վ. Ի. Լենինի «Մատերիալիզմ և էմպիրիոկրիտիցիզմ» երկի հրապարակման 70-ամյակի առթիվ)

1980 ՍՄԿԿ Կենտկոմի որոշումը Վլադիմիր Իլյիչ Լենինի ծննդյան 110-րդ տարեդարձի մասին

Վ. Մ. Կաիրյան— Կուլտուրայի մասին լենինյան ուսմունքը և արդիականությունը

Կ. Լ. Դալլաքյան— Մեծ Լենինի անպարտելի դրոշով

Մարիետա Շահինյան— Երկիր, ուր քայլել է սկսել Վոլոդյա Ուլյանովը

Ա. Ա. Առաքելյան— Դեմոկրատական ցենտրալիզմի լենինյան սկզբունքը արտադրության կառավարման մեջ

Ա. Ջ. Բեգիյան— Լենինյան դեմոկրատիան և սովետների վերաբերյալ նոր օրենսդրությունը

**ԶԵՓՅՈՒՌ ԱՍԱՏՐՅԱՆ**

---




Адрес редакции: 375033, Ереван 33, Барекамутян 59 г.

**Խմբագրության հասցեն՝ 375033, Երևան—33, Բարեկամության 59 գ:** Հեռախոսներ՝ գլխավոր խմբագրի տեղակալ՝ 27—25—29, պատ. քարտուղար՝ 27—12—92, պրոպագանդայի և էկոնոմիկայի բաժիններ՝ 27—37—80, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 27—19—80, գրական աշխատողներ՝ 27—60—64:

*ՎՖ 05735 Պատվեր 689 Թղթի չափսը 70×108 1/16: Տիրաժ՝ 16.432 Գինը՝ 20 կոպ.: Տպ. 6 մամուլ, մամուլում 68840 նիշ: Ստորագրված է տպագրության 2/IV-80 թ.*

*ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Ալ. Խաչհակյան փող. № 28:*


## ՆՈՐ ԳՐՔԵՐ

Վ. Ի. Լենինի ծննդյան 110-րդ տարեդարձի մասին ՍՄԿԿ Կենտկոմի որոշումը: *«Հայաստան» հրատ., 1980:*

Լ. Ի. Բրեժնևի պատասխանները «Պրավդա» թերթի թղթակցի հարցերին: *«Հայաստան» հրատ., 1980:*

Աշխատություններ: № 6: *Ռուսերեն և հայերեն: ՀԿԿ Կենտկոմի կուսպատմության ինստ., ՍՄԿԿ Կենտկոմին առընթեր մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի հայկական ֆիլիալ: «Հայաստան» հրատ., 1980:*

Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության օրենքը ՍՍՀՄ-ում ժողովրդական վերահսկողության մասին: *«Հայաստան» հրատ., 1980:*

Հ. ՄԱԿԻՆՅԱՆ— Էջեր ինտերնացիոնալ համախմբման պատմությունից: *«Հայաստան» հրատ., 1980:*

Ա. ԻՆՃԻԿՅԱՆ— Միքայել Նալբանդյանի կյանքի ու գործունեության տարեգրությունը: *Ե., ԳԱ հրատ., 1980:*

Ք. ԳՐԻԳՈՐՅԱՆ— Սովետական Հայաստանի կոլտնտեսային գյուղացիությունը Հայրենական մեծ պատերազմի տարիներին (1941—1945): *Ե., ԳԱ հրատ., 1980:*

Նվիրական անուններ: *Ակնարկների և հոդվածների ժողովածու: «Հայաստան» հրատ., 1980:*

Արիստոտելը և հայ փիլիսոփայությունը: *Հոդվածների ժողովածու: Ե., ԳԱ հրատ., 1980:*

Ա. ԹՈՎՄԱՍՅԱՆ— Սովետական քրեական իրավունք: *Հ. 3: Հատուկ մաս: ԵՊՀ հրատ., 1980:*

Հ. ԲԱՐՍԵՂՅԱՆ— Հայերենի խոսքի մասերի ուսմունքը: *ԵՊՀ հրատ., 1980:*

В. И. ЛЕНИН — **Что делать?** Наболевшие вопросы нашего движения. М., Политиздат, 1979.

ЛЕНИН. У руля Страны Советов. 1920, 1921, 1922, 1923, 1924. По воспоминаниям современников и документам. Т. 2. М., Политиздат, 1979.

Л. ПОНОМАРЕВ — **Комплексный подход к воспитательной работе.** М., «Сов. Россия», 1979.

В. АФАНАСЬЕВ, В. МАРКОВ и М. НЕНАШЕВ — **Источники действенности марксистско-ленинской идеологии.** М., «Знание», 1979.

**Исторический опыт борьбы КПСС против меньшевизма.** Сборник статей. М., «Мысль», 1979.

**Мировой социализм и проблемы развивающихся стран.** Коллектив авт. Под ред. В. Д. Щетинина. М., «Междунар. отношения», 1979.

Н. ВОЗНЕСЕНСКИЙ — **Избранные произведения.** 1931—1947. М., Политиздат, 1979.

**Пропагандисты ленинской школы.** Сборник очерков. Изд. 2-е, доп. М., Политиздат, 1979.

**Кузница победы.** Подвиг тыла в годы Великой Отечественной войны. Очерки и воспоминания. Изд. 2-е. М., Политиздат, 1979.

Н. МИТРОФАНОВ — **Радио Октября. День за днем...** Изд. 2-е, доп. М., Политиздат, 1979.

Ф. КУЗНЕЦОВ — **Размышления о нравственности.** Книга публицистики. М., «Сов. Россия», 1979.

В. ПЕУНОВ — **Лично ответствен.** Серия «Повести о делах и людях партии». М., Политиздат, 1979.

Г. ПАВЛОВ — **Чувство нового в партийной работе.** М., Политиздат, 1979.

М. ВОРОПАЕВ — **Высокая требовательность.** М., «Сов. Россия», 1979.

**Экономические вопросы теории и практики социализма.** М., «Экономика», 1979.

**Экономика и внешнеэкономические связи СССР.** Справочник. М., «Междунар. отношения», 1979.

Գինը՝ 20 կ.
Индекс 77783
ISSN 0130—8114

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ԷԼԵԿՏՐՈՆԻԿԱՆ ԵՎ ՏԱՔՍԻՆ

*Վերջերս Սոֆիայի տաքսամոտորային պարկի կառավարմանն օգնում է բուլղարական ԷՀՄ-երի հիման վրա սարքավորված էլեկտրոնային սիստեմը։ Այն մշակում, կուտակում և հաղորդում է տվյալներ տաքսապարկերի, առանձին վարորդների և մեքենաների աշխատանքի վերաբերյալ, հիշողության մեջ պահում օպերատիվ տեղեկություններ՝ քաղաքի բոլոր բենզալցման կայաններում եղած վառելիքի մասին, կազմում հաշվետվություններ՝ տաքսիների վազքի ու շահույթի վերաբերյալ։ Հաշվետու ժամանակաշրջանի՝ շաբաթվա, ամսվա, եռամսյակի վերջում սիստեմը կազմում է Բուլղարիայի մայրաքաղաքի մարդատար տաքսիների կառավարման տնտեսական գործունեության հաշվետվությունը։ Էլեկտրոնիկան վերլուծում է գործունեությունը՝ համեմատելով այն նախորդ հաշվետու ժամանակաշրջանի հետ։ Այդ վերլուծության հիման վրա սիստեմը հրահանգավորում է, թե ինչպես բարելավել ձեռնարկության աշխատանքը։ Սպասվող տնտեսական արդյունքը մեկ տարում կազմում է 176 հազար լև։*

*Բայց էլեկտրոնիկան մուտք է գործել ո՛չ միայն տաքսապարկ, այն առկա է ամեն մի տաքսիում։ Հայրենական միկրոպրոցեսորի բազայի հիման վրա ըստեղծվել է սովորական մեխանիկականից առավել հուսալի և ստույգ էլեկտրոնային տաքսաչափ։ Դրա փայլատակող թվերը պարզ երևում են օրվա բոլոր ժամերին՝ անկախ խցիկի լուսավորությունից։*

## ՇՐՋԱԿԱ ՄԻՋԱՎԱՅՐԻ ՊԱՀՊԱՆՈՒԹՅԱՆ ԿՈՄՊԼԵՔՍ ԼԱԲՈՐԱՏՈՐԻԱ

*Հունգարական «Մետրիմպեքս» սարքաշինական միավորումն ստեղծել է միջավայրի աղտոտությունը հայտաբերող և այն վերացնող կոմպլեքս լաբորատորիայի մոդել։ Լաբորատորիայի մոտ հարյուր սարքերին սպասարկում է ընդամենը 10 հոգի։ Անալիզների մեծ մասը կատարվում է ավտոմատ, բոլոր տվյալները մշակվում են ԷՀՄ-երի միջոցով։ Սարքերն ու հաշվիչները արագ կատարում են ջրի, օդի, հողի, ինչպես և ջրավազանների հատակից վերցված տիղմի նմուշների ճըշգրիտ անալիզը։ Դրանք կարող են որոշել օդում ծծմբի, ածխաջրածնի, ազոտի և ածխածնի օքսիդի, ջրածնի և քլորի թունավոր միացության· քանակը. ջրում հայտաբերում են թթվի, ալկալիի, յուղի և ծանր մետաղների միացությունները, հողում՝ պարարտանյութերի և թունաքիմիկատների մնացորդները։ Լաբորատորիան ունի հսկիչ սարքերի ամենախոշոր հավաքածուն աշխարհում։ Նախատեսված են անալիզի համար նմուշներ ընտրող ու նախապատրաստող բազմաթիվ հարմարանքներ։ Այստեղ կան նաև ստացված ինֆորմացիան կոդավորող և վնասակար թափոններ արտազատող արտադրապրոցեսի վերաբերյալ հրահանգող տեղեկություններ հաղորդող սարքեր։ Օրինակ, МУ—352 ավտոմատ սարքը մշակում է արդյունաբերական հոսքաջրերի չեզոքացման հրահանգ։ Անդրադարձ կապի սիստեմի միջոցով այն գործարանին է հաղորդում ջրվազանները չաղտոտող ալկալիի, օրգանական թթուների, ցիանիդի՝ օրենքով սահմանված չափերը։ Ավտոմատը ո՛չ միայն ահազանգում, այլև միացնում է գործարանի ջրահոսքի ռեգեներացման ու չեզոքացման վթարային սիստեմը։*

## ՀՅՈՒՐԱՆՈՑ՝ ԱՆԻՎՆԵՐԻ ՎՐԱ

*Երկհարկանի ավտոբուսները նորույթ չեն, բայց արևմտագերմանական «Նեոպլան» ֆիրմայի ավտոբուսը հետաքրքրական է նրանով, որ դրա առաջին հարկն ամբողջովին գրավում է տնտեսական մասը։ Այստեղ են 320 ուժանոց շարժիչը, 14 խմ տարողությամբ ուղեբեռային բաժանմունքը, նախատեսված է ջեռուցման բաժին՝ դահուկների համար։ Ավտոբուսում կա խոհանոց սալօջախով, որը վառվում է հեղուկ վառելիքով բանող շարժիչի արտանետած գազերով։ Առաջին հարկում է նստում և վարորդը։ Խուցը ցածրադիր է, և նա լավ է տեսնում ճանապարհը։ Վարորդի կողքին ուղեկցողի տեղն է։ Սանդղակով խցից կարելի է բարձրանալ երկրորդ՝ ուղևորների հարկը, ուր հարմար տեղավորվում են 54 ուղևոր։ Լայների բարձրությունը 365 սանտիմետր է։*